## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջապես կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание








# ՄԵԾ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀՈՒԺԿՈՒ ԼԾԱԿԸ

Աշխատանքային մրցությունը հասարակական արտադրության արգասիքն է, արտադրողականության բարձրացման կարևոր պայմաններից մեկը: «Արտադրողական աշխատանքների մեծ մասի ընթացքում,— նշել է Կ. Մարքսը,— հասարակական կոնտակտն ինքն արդեն առաջ է բերում մրցակցություն և կենսական եռանդի յուրահատուկ բարձրացում, որն ուժեղացնում է առանձին անձերի անհատական գործունեությունը»: Արմատապես տարբեր են մրցության բնույթն ու նպատակները մասնավոր սեփականատիրական աշխարհում և սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում:

Սոցիալիստական մրցությունն իր էությամբ անհարիր է շահագործողական հասարակարգերին հատուկ տարերային մրցապայքարին: Կապիտալիզմի պայմաններում իշխում է մրցակցության դաժան օրենքը: Վերջինս աշխատավորությանը շահագործելու միջոց է, որը սահմանափակում է աշխատողի հասարակական ակտիվությունը, աղճատում, միակողմանի է դարձնում նրա պրոֆեսիոնալ հակումները, սերմանում աշխատողների միջև թշնամանքի, ինդիվիդուալիստական հոգեբանություն:

Աշխատանքի սոցիալիստական մրցությունը խարսխված է արտադրամիջոցների հանրային սեփականության, մարդկանց գիտակցական բարձր կարգապահության, աշխատավորական ամենալայն զանգվածների ակտիվության ու ինքնագործունեության վրա՝ հանուն ժողովրդի նյութական ու հոգևոր բարգավաճման:

Աշխատանքային մրցությունն արտադրության սոցիալիստական եղանակի զարգացման օրինաչափությունն է, շարժիչ ուժը, նոր հասարակարգի սոցիալ-տնտեսական բնույթի որոշիչ գծերից մեկը:

Սոցիալիստական մրցության փառապանծ պատմությունը, նրա զարգացման հարուստ փորձը վկայում են, որ առանց մրցության լայն ծավալման անհնարին էր ապահովել սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում:

Սոցիալիստական մրցությունը որպես կոմունիստական հասարակության կառուցման անհրաժեշտ գործոն, առաջին անգամ գործնականորեն ու տեսականորեն հիմնավորեց Վ. Ի. Լենինը: «Ինչպես կազմակերպել մրցությունը», «Սովետական իշխանության հերթական խնդիրները», «Մեծ նախաձեռնություն» հոդվածներում ու աշխատություններում նա բազմակողմանիորեն մշակեց սոցիալիստական մրցության սկզբունքները, բացահայտեց դրա նշանակությունը նոր հասարակության կառուցման գործում:

*Լենինը երկրում կազմակերպված առաջին շաբաթօրյակը գնահատեց որպես «մեծ նախաձեռնություն», սոցիալիստական մրցության սկիզբ։ Նա շաբաթօրյակների մեջ տեսավ նոր հասարակարգի կառուցմանն աշխատավորական լայն մասսաներին ներգրավելու եղանակը։*

*Որպես նոր հասարակության կառուցման անհրաժեշտ մեթոդ, աշխատանքային մրցությունն իր կյանքի կոչվելու առաջին իսկ օրից եղել է կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, Վ. Ի. Լենինը խնդիր դրեց՝ կազմակերպել ու ծավալել սոցիալիստական մրցությունը, որպես կարևոր պետական խնդիր։ Նա մրցության կազմակերպումը համարում էր սովետական իշխանության հերթական խնդիրներից մեկը։*

*1929 թ. կուսակցության XVI կոնֆերանսի դիմումում՝ ուղղված Սովետական Միության բոլոր բանվորներին ու աշխատավոր գյուղացիներին, ասված է. «Մրցությունը, արթնացնելով մասսաների ստեղծագործական եռանդն ու նախաձեռնությունը, պետք է դառնա աշխատավորներին սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու մշտական մեթոդ»։*

*Հարուստ ու բովանդակալից է սոցիալիստական մրցության պատմությունը, որի տարեգրության էջերը լի են սովետական մարդկանց աշխատանքային սխրանքները նկարագրող վավերագրերով։*

*Սոցիալիստական մրցությունը երկրի պատմության ողջ ընթացքում անընդհատ զարգացել և կատարելագործվել է, ընդունելով բազմազան ձևեր ու չափեր։ Սոցիալիստական մրցության ձևերի բազմազանությունը պայմանավորվում է ՍՍՀՄ էկոնոմիկայի զարգացման յուրաքանչյուր փուլի տնտեսական-քաղաքական խնդիրների առանձնահատկություններով։ Մրցության ձևերի փոփոխություններն արտահայտել են այն տեղաշարժերը, որոնք կատարվել են երկրի էկոնոմիկայում և աշխատանքի նկատմամբ մարդկանց ունեցած վերաբերմունքում։*

*Սոցիալիստական մրցությունն իր զարգացման ավելի քան հինգ տասնամյակի ընթացքում ունեցել է 5 հիմնական ձևեր։ Դրանք են՝ կոմունիստական շաբաթօրյակները, հարվածային բրիգադները, ստախանովյան շարժումը, կոմունիստական աշխատանքի կոլեկտիվները։ Վերջապես հինգերորդը, որը ծնունդ առավ անցած հնգամյակում, դա աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումն է։ Վերջինս արժանացավ ՍՄԿԿ XXIV համագումարի հավանությանը։ Այս շարժումը սոցիալիստական մրցության անհամեմատ ավելի կատարյալ և զարգացած ձևն է, որն իր մեջ ամփոփում է այն ողջ լավագույնը, ինչ կուտակել է սոցիալիստական մրցությունն իր ծագման ու զարգացման ընթացքում։*

*Իհարկե, աշխատանքային մրցության նոր ձևերի արմատավորումը չի բացասում նախորդ ձևերի կիրառումը։ Դրանք նույնպես օգտագործվում են կոմունիստական շինարարության տարբեր բնագավառներում։ Այժմ երկրի բազմաթիվ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններ արդյունավետ օգտագործում են սոցիալիստական մրցության տարբեր ձևեր, որոնք կյանքի են կոչվել տակավին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի առաջին տարիներին։ Հատկապես լայն տարածում են գտել գյուտարարների և նորարարների, մրցության խնայողության ռեժիմի համար շարժումները։*

*Կուսակցության Կենտրոնական կոմիտեն վերջերս նորից անդրադարձավ*



*աշխատանքային մրցության հարցերին։ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշումը քաղաքական մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ է, գործողության մարտական ուղեցույց, որի ընդունումը պայմանավորված է մի շարք հանգամանքներով։*

*Նախ, ՍՍՀՄ-ն թևակոխել է իր զարգացման նոր փուլը, երբ երկրի բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և ողջ ժողովրդի առջև դրվել են նոր խնդիրներ։ Իսկ այդ նոր խնդիրների լուծումը կոմունիստական կուսակցությունից, սովետական ժողովրդից պահանջում են քաղաքական և գործնական նոր միջոցառումների իրականացում։ Այժմ երկրի զարգացման արդի փուլում նոր խնդիրներ են դրվում սոցիալիստական մրցության առջև։ Երկրի առաջընթացի այս շրջանում աշխատանքային մրցությունը կոչված է որակապես նոր դեր խաղալու ինչպես ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, այնպես և աշխատավորների դաստիարակության գործում։*

*Հայտնի է, որ ՍՄԿԿ XXIV համագումարի նախօրյակին ծավալված համաժողովրդական մրցության ընթերքում, աշխատավորական զանգվածների ստեղծագործական նախաձեռնությունը երկնեց նոր՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը։ Թեև դա չի հերքում այն իրողությունը, որ սոցիալիստական մրցության կազմակերպման գործում գոյություն ունեին լուրջ թերություններ և անճշտություններ։*

*Ահա այն հարցերը, որոնց լուծման անհրաժեշտությամբ է թելադրված ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» վերջին որոշումը։*

*Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը սոցիալիստական մրցության անհամեմատ ավելի կատարյալ և զարգացած ձևն է։ Եթե սոցիալիստական մրցության նախորդ բոլոր ձևերի ժամանակ մրցության մեջ ընդգրկված կոլեկտիվներն իրենց ստանձնած պարտավորություններում հիմնականում սևեռում էին արտադրական հարցերը, ապա աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման մասնակիցներն իրենց պարտավորություններում, բացի արտադրական խնդիրներից, ներառնում են նաև աշխատավորների դաստիարակության հարցը։ Սա նոր երևույթ է, երբ սովետական մարդու դաստիարակության հարցն աշխատանքային մրցության մեջ դրվում է արտադրահարցերի լուծման մակարդակին։ Եվ դա հասկանալի է, չէ՞ որ կոմունիստական կուսակցությունը, սովետական ժողովուրդը կոմունիզմի շինարարության արդի փուլում վճռում են երկու հիմնական հարց, աշխատանքի ամենաբարձր արտադրողականության ապահովման շնորհիվ ստեղծել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, և երկրորդ, ապահովել կոմունիստական հասարակության մարդու դաստիարակությունը։*

*ՍՄԿԿ XXIV համագումարի նախօրյակին ծնունդ առած աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումն այսօր համաժողովրդական բնույթ է ստացել։ Դրա հետ միասին երկրի բազմաթիվ քաղաքներում, արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում ծնունդ առան բազմաթիվ այլ նախաձեռնություններ, որոնք նույնպես հավանության արժանացան և բարձր գնահատվեցին ՍՄԿԿ Կենտկոմի կողմից։ ՍՄԿԿ Կենտկոմը բարձր գնահատեց Մոսկվա և Լենինգրադ քաղաքների բազմաթիվ ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնությունը՝ իններորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու մասին։*

Այսօր ամենուր մոսկվացիներին և լենինգրադցիներին հետևում են բազմաթիվ ձեռնարկությունների հազարավոր կոլեկտիվներ։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հավանությանն արժանացան նաև երկրում տարածված արտադրական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, պայքար մեքենաների և գործիքների բարձր արտադրողականությամբ կիրառելու, արտադրական տեխնոլոգիան կատարելագործելու, որակավորման բարձրացման և հարակից մասնագիտությունների տիրապետման, ներքին ռեզերվների հայտաբերման և օգտագործման համար շարժումները։

Վերջերս էր, որ Լենինգրադում ծնունդ առավ մի նոր հայրենասիրական շարժում, որի նախաձեռնողներն էին Կիրովի անվան գործարանի հղկող Եվգենի Լեբեդևը և Անատոլի Կոզլովը։ Նրանք կոչ հղեցին իրենց հայրենակիցներին՝ «Հնգօրյա առաջադրանքը— չորս օրում» կատարելու մասին։ Լեբեդևի և Կոզլովի նախաձեռնությունը կարճ ժամանակամիջոցում պաշտպանեցին ավելի քան 80 հազար լենինգրադցիներ։

Երկրում վերջին տարիներին որակական տեղաշարժեր են կատարվել նաև աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցման գործում։ Դրա վառ ապացույցը նորարարների և գյուտարարների շարունակ ավելացող առաջարկությունների աճն է։ Գյուտարարներն ու նորարարները յուրաքանչյուր տարի ներկայացնում են 4 միլիոն առաջարկություն, որի 80 տոկոսը գործնական կիրառություն է գտնում։ Միայն անցյալ հնգամյակում նրանց կողմից արված առաջարկություններից ստացված տնտեսումը կազմել է 12,5 միլիարդ ռուբլի։

Երկրում ծավալված համաժողովրդական մրցության մեջ ակտիվորեն պայքարում են նաև մեր հանրապետության աշխատավորները։ Հայաստանի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունը ո՛չ միայն հանդիսացել են երկրում կյանքի կոչված հայրենասիրական նախաձեռնությունների առաջին արձագանքողները, այլև իրենք են դարձել նոր հայրենասիրական նախաձեռնությունների պիոներները, որոնք լայն տարածվել են ողջ երկրում։ Հայաստանի աշխատավորներն աշխատանքային հերոսության մասսայական օրինակներ ցույց տվեցին ժողովրդական տնտեսության վերականգնման, ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյակների, Հայրենական մեծ պատերազմի և հետպատերազմյան բոլոր տարիներին։

Դեռևս 1960 թ. կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հավանությանն արժանացավ և ամբողջ երկրում լայն տարածում գտավ Հայկական ՍՍՀ Արտաշատի շրջանի Ստ. Շահումյանի անվան կոլտնտեսության բրիգադավար Գրիգոր Բարսեղյանի նախաձեռնությունը՝ «Հարուստ հեկտարի համար» շարժումը։ Իրենց աշխատանքային նախաձեռնություններով հաճախակի հանդես են գալիս Երևանի, Լենինականի, Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների շատ կոլեկտիվներ, Շամշադինի, Իջևանի, Ստեփանավանի, Նոյեմբերյանի և մյուս շրջանների ծխախոտագործները, այգեգործները, անասնապահները։

Այսօր, Հայկական ՍՍՀ-ում ավելի քան 400 հազար բանվոր-ծառայողներ և գյուղի աշխատավորներ պայքարում են իններորդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները պատվով կատարելու համար։ Ծավալված գործարար սոցիալիստական մրցության շնորհիվ հանրապետության աշխատավորներն արդյունաբերության արտադրության իրացման 8 ամսվա պլանային առաջադրանքները կատարեցին 101,8 տոկոսով, երկրին տալով ավելի քան 34 միլիոն ռուբլու գերպլանային արտադրանք։ Արդյունաբերության աշխատող-



ներից ետ չեն մնում գյուղի աշխատավորները։ Չնայած բնա-կլիմայական անբարենպաստ պայմաններին, նրանք պատվով են կատարում գյուղի առջև դրված առաջադրանքները։

Պայքարը հնգամյակի առաջադրանքները կատարելու համար այս օրերին յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կոլեկտիվի պատվի գործն է։ Այդ պայքարում կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները լայնորեն օգտագործում են ժողովրդական ստեղծագործության, աշխատանքային մրցության բազմաթիվ ձևեր ու մեթոդներ։ Շատ կոլեկտիվներում աշխատանքը և ստեղծագործությունը ներդաշնակորեն միաձուլված են։ Այսօրվա բանվորի աշխատանքում սկսել է ավելի շատ հանդես գալ ստեղծագործական մոտեցումը գործի նկատմամբ, քան երեկ։ Այսօր հանրապետությունում հաշվվում են ավելի քան 16 հազար նորարարներ։ Վերջին հինգ տարվա ընթացքում նրանց կողմից արված առաջարկություններից արտադրության մեջ ներդրվել է 70 հազարը, որից ստացված օգուտը կազմել է 100 միլիոն ռուբլի։ Ձեռնարկությունների կոլեկտիվների առջև դրված խնդիրների կատարման գործում որոշակի դեր են խաղում մըշտապես գործող արտադրական խորհրդակցությունները։ Այժմ հանրապետությունում գործում են 1.648 համագործարանային և արտադրամասային արտադրական խորհրդակցություններ, որոնց մեջ ընդգրկված են ավելի քան 63 հազար բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Միայն 1970 թ. նրանք արել են 21 հազար առաջարկ, որից 17 հազարը ներդրվել է արտադրության մեջ։ Յուրաքանչյուր օր, կյանքը, աշխատանքը ծնում են նոր նախաձեռնություններ, նոր գործեր։ Շարունակ ուղղումներ են մտցվում պետական առաջադրանքների կատարման ժամկետների մեջ։ Սեպտեմբերին հայրենասիրական հիանալի նախաձեռնությամբ հանդես եկավ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի բանվոր, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռ. Մովսիսյանը։ Նա կոչ արեց իններորդ հնգամյակը 3,5 տարում կատարելու մասին, որին անմիջապես արձագանքեցին գործարանի առաջավոր շատ բանվորներ։

ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները կենսագործելու, սովետական ժողովրդի առջև ծառացած քաղաքական ու տնտեսական վիթխարի խնդիրները լուծելու համար, կոմունիստական կուսակցությունն ակտիվորեն շարժման մեջ է դնում սոցիալիստական հասարակության բոլոր գործող ուժերը, արտադրության զարգացման բազմաթիվ լծակները և ջանում լիովին վերացնելու այդ մարզում եղած թերություններն ու սխալները։ Սոցիալիստական մրցության գործում եղած թերությունների վերացման հոգսով է տոգորված նաև ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշումը, որոնց վերացումը՝ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական կազմակերպությունների և օրգանների առաջնահերթ խնդիրներից մեկն է։

Սոցիալիստական մրցությունը, որպես նոր հասարակության շարժիչ ուժ, իր վիթխարի ներգործությունն անընդհատ կարող է ուժեղացնել և մեծ արդյունք տալ, եթե բարձր հիմքերի վրա դրվեն նրա կազմակերպումը, եթե անշեղորեն կիրառվեն մրցության ղեկավարման լենինյան սկզբունքները։ Այսինքն՝ եթե պահպանվի մրցության արդյունքների հրապարակայնությունը և համադրելիությունը, անհրաժեշտ պայմաններ ստեղծվեն աշխատանքի առա-

ջավոր փորձը լայնորեն կիրառելու համար, ճիշտ հիմքերի վրա դրվի մրցության մեջ հաղթողների բարոյական և նյութական խրախուսումը։

Որո՞նք են սոցիալիստական մրցության կազմակերպման գործում այն թերությունները, որոնց վերացումը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն՝ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է համարում։ Նախ և առաջ, շատ կուսակցական, արհմիութենական կազմակերպություններ թերագնահատում են սոցիալիստական մրցության դերը արտադրական հարցերի լուծման և աշխատավորներին դաստիարակելու գործում։ Նրանք մոռանում են կյանքում վաղուց ապացուցված այն հայտնի ճշմարտությունը, որ սոցիալիստական մրցությունը, լինելով աշխատանքի արտադրողականության բարձրացման հզորագույն ուժ, դրա հետ միասին հանդիսանում է բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության կոմունիստական դաստիարակության վճռական միջոց։ Աշխատավորության դաստիարակության կարևոր օղակ են կոմունիստական աշխատանքի դպրոցները։ Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ որոշում ընդունեց այդ դպրոցների աշխատանքի բարելավման նպատակով։ Եթե մինչև ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը մեր հանրապետությունում գործում էին մի քանի տասնյակ նման դպրոցներ, ապա այժմ գործում են 1000-ից ավելի, ընդ որում, միայն 26 կոմիսարների անվան շրջանում՝ 115-ը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ կոլեկտիվներում մրցության պայմանները մշակելիս, առանձին դեպքերում պայմանագրեր չեն կնքում, դրանց մասնակից չեն դարձնում կոլեկտիվի անդամներին։ Երբեմն մրցող կողմերը վերցնում են իրենց հնարավորություններից ցածր պարտավորություններ կամ հակառակը, չեն պայքարում ստանձնած պարտավորությունների կատարման համար, չեն ամփոփում մրցության արդյունքները։ Այնուհետև, խախտվում են սոցիալիստական մրցության մեջ հաղթողների նյութական և բարոյական խրախուսանքի մեթոդները կամ հաղթողներն ընդհանրապես չեն խրախուսվում։ Գործին վնասում է և այն, որ հաճախ չկա մրցության արդյունքների հրապարակայնություն։ Մրցող կողմերը պարտավորություններ են ստանձնում, պայքարում դրանց կատարման համար, հաղթողները պարգևատրվում են, սակայն այդ մասին տվյալ կոլեկտիվում նույնիսկ չեն իմանում։ Այս հարցում լուրջ անելիքներ ունեն հանրապետության պարբերական մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն և մասսայական պրոպագանդայի մյուս հաստատությունները։

Բացի այս, հոգ չի տարվում առաջավոր փորձի, արտադրության և աշխատանքի կազմակերպման առաջադիմական եղանակների ուսումնասիրման ու դրանց կիրառման համար։ Եվ վերջապես, շատ կազմակերպություններ, առանց հաշվի առնելու պարտավորությունների կատարման բազմակողմանի արդյունքները, կոլեկտիվներին շնորհում են կոմունիստական աշխատանքի կոչումներ։ Մինչդեռ, կոչում շնորհող կազմակերպությունները և օրգանները պետք է լավ հիշեն Վ. Ի. Լենինի տեսակետն այդ հարցում, որ «Այդքան պատվավոր անունը պետք է նվաճել երկար ու համառ աշխատանքով, նվաճել իսկական կոմունիստական շինարարության ասպարեզում ապացուցված գործնական հաջողությամբ»։

Կոմունիստական կուսակցության սահմանած վիթխարի նախագծումների, ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների իրականացումը կախված է սովետական ժողովրդի հայրենանվեր և հերոսական աշխատան-



քից, աշխատանքային մրցությունից։ Կոմունիստական շինարարության աճի և նրա խնդիրները բարդանալու համեմատ, աճում է սոցիալիստական մրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման մոբիլիզացնող և դաստիարակիչ դերը։

«Կուսակցությունն իր խնդիրն է համարել,— ասված է Լ. Ի. Բրեժնևի՝ XXIV համագումարում տրված զեկուցման մեջ,— պաշտպանել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մասսայական շարժումը, համակողմանիորեն խրախուսել սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը»։

Սոցիալիստական մրցության ծավալման նոր էտապի խնդիրների ճիշտ լուծումից է կախված կոմունիստական հասարակության կառուցման պատմական առաջընթացի տեմպը։ Ինչպես ցայսօր, նմանապես այժմ և վաղը կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների գործունեության համակողմանի գնահատման չափանիշներից մեկը աշխատանքի հանդեպ աշխատավորական զանգվածների ցուցաբերած կոմունիստական վերաբերմունքն է, այդ ոգով նրանց անդուլ դաստիարակությունը։

Սոցիալիստական մրցության լայն տարածման ու արմատավորման գործում, իրոք, անգնահատելի է մամուլի բոլոր օրգանների, հեռուստատեսության, ռադիոյի ու ինֆորմացիայի տարբեր կազմակերպությունների դերը։ Առավել սիստեմատիկ, ավելի համակողմանի լուսաբանել սոցիալիստական աշխատանքի առաջավորների հայրենասիրական նախաձեռնության յուրաքանչյուր իրողություն, բարոյապես խրախուսել ու դրվատել նոր կյանքի այդ առաջամարտիկներին, ըստ պատշաճի գնահատել կոմունիզմ կառուցողների ազնիվ ջանքերի պտուղները։ Ահա այն շնորհակալ ու մեծանշանակ դերը, որ կոչված են խաղալու պրոպագանդայի և ինֆորմացիայի սովետական բոլոր օրգանները։



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ա. Ն. ՅԱԿՈՎԼԵՎ

## ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

### I

ՍՄԿԿ XXIV համագումարը ցայտուն ցուցադրեց սոցիալիզմի, լենինիզմի հաղթանակը, կուսակցության և ժողովրդի միասնությունը, մեր պետության ժողովուրդների եղբայրությունը: Համագումարն առաջ բերեց սովետական մարդկանց աշխատանքային խանդավառության նոր վերելք: Այն դարձավ հանուն սոցիալական և ազգային ազատության, հանուն սոցիալիզմի, ընդդեմ իմպերիալիզմի և ռեակցիայի մղվող պայքարի ճակատը համախմբող և ակտիվացնող հզոր գործոն:

Համագումարը կանխագծեց սովետական հասարակության հետագա զարգացման լայն ծրագիր: Այդ ծրագիրը խորապես ռեալիստական է, այն մշակված է իրականության և դրա զարգացման հեռանկարի գիտական վերլուծության, հաստատուն կերպով խարսխվում է սոցիալիստական և կոմունիստական շինարարության նվաճված արդյունքների վրա: Կենտկոմի հաշվետու զեկուցման, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, համագումարի փաստաթղթերի, ելույթների, համագումարում քննարկվող հարցերի լուծման բնորոշ առանձնահատկությունն այն էր, որ հասարակության զարգացման բոլոր արմատական հարցերն արծարծվեցին իրենց ամբողջության, ամենասերտ կապի և փոխադարձ պայմանավորվածության մեջ:

Գիտակցության գործոնի դերի բարձրացումը առավել հստակորեն հանդես է գալիս որպես կոմունիստական ֆորմացիայի զարգացման օրինաչափություն: Ուստի, գաղափարական աշխատանքի նկատմամբ սևեռուն և չթուլացող ուշադրությունը ՍՄԿԿ ավանդույթն է, լենինյան ավանդույթը: ՍՄԿԿ XXIV համագումարը բազմակողմանիորեն քննարկեց հասարակության հոգևոր կյանքի զարգացման, նոր մարդու ձևավորման հարցերը և արդի պայմանների յուրահատկության ստեղծագործական վերլուծության և հաշվառման հիման վրա սահմանեց կուսակցական կազմակերպությունների գաղափարական-դաստիարակչական աշխատանքի արդիական խնդիրները: Համագումարի փաստաթղթերը գաղափարական գործունեությանն ավելի մեծ նպատակասլացություն են հաղորդում, հանդիսանում են պրակտիկ աշխատանքի գաղափարական-ստեղծագործական հիմքը երկարատև ժամանակի համար:



ՍՄԿԿ XXIV համագումարի հիմնավորած կարևոր պրոբլեմներից մեկը գաղափարական-դաստիարակչական աշխատանքի աճող նշանակությունն է զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում: Խնդիրն այն է, ընդգծվում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ համագումարի ընդունած բանաձևում, որ «կոմունիստական իդեալների, մեր շինարարության կոնկրետ խնդիրների պրոպագանդան կատարվի ավելի ակտիվ, նպատակասլաց»: Սովետական հասարակությունը գտնվում է իր զարգացման այնպիսի էտապում, երբ գիտակցականության մակարդակը, իրական գիտելիքները, մտածողության, աշխատանքի և վարքագծի կուլտուրան ավելի ակտիվ ներգործություն են ունենում արտադրաուժերի զարգացման, հասարակական հարաբերությունների կատարելագործման վրա: Հոգևոր գործոնները դառնում են դեպի կոմունիզմ առաջընթացի առավել գործուն արագացուցիչներ: Ուստի, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, հեղափոխական տեսության ստեղծագործական զարգացումը, ժողովրդի կրթվածության ու կուլտուրայի անշեղ բարձրացումը կազմում են ՍՄԿԿ բազմակողմանի գործունեության կարևորագույն կողմերը: Գիտական աշխարհայեցողության, աշխատավորների ընդհանուր և պրոֆեսիոնալ կուլտուրայի հարցերի նկատմամբ հարաճուն ուշադրությունը բնորոշվում է նաև նրանով, որ սոցիալիստական առաջընթացի տեմպերը շատ բանով են կախված գիտա-տեխնիկական հայտնագործությունները հմտորեն օգտագործելուց: Իրոք, սոցիալիզմն այնպիսի սոցիալական սիստեմ է, որն իր բնույթով առավելագույն հնարավորություններ ունի գիտա-տեխնիկական հեղափոխության արդյունքներն օգտագործելու համար:

Իններորդ հնգամյակի արմատական պրոբլեմներից մեկը՝ տնտեսական աճի առավել արդյունավետ, որակական գործոնների զարգացումը, նկատի ունի բուն աշխատողի՝ հասարակության գլխավոր արտադրուժի, անձնավորության լայն ամենայնի զարգացումը: Հետևաբար, բարձրանում է նաև հոգևոր-բարոյական դաստիարակության սոցիալական դերը, որպիսի հանգամանքը ավելի մեծ չափով է ազդում արտադրության որակական գործոնների կատարելագործման ու զարգացման վրա, ավելի է օժանդակում նաև՝ աշխատանքի արտադրողականությանը: Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում սահմանված են գիտա-տեխնիկական և տնտեսական խնդիրները, որոնց հաջող լուծումը կախված է հասարակության բոլոր նյութական ու հոգևոր ուժերի մոբիլիզացման համակողմանի աշխատանքից: Ուստի, մասսաների նախաձեռնության ու ակտիվության բազմակողմանի զարգացումը կենտրոնական պրոբլեմներից մեկն է: Կուսակցության բոլոր կազմակերպությունների պարտքն է՝ գաղափարական-դաստիարակչական լայն աշխատանքով զորավիգ լինել նոր հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրների, կոմունիստական շինարարության պլանների կենսագործմանը:

Գաղափարական-դաստիարակչական աշխատանքի առավել ակտիվացման անհրաժեշտությունը պայմանավորված է նաև հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման պահանջմունքներով: Դասակարգերի և սոցիալական խմբերի անշեղ մերձեցումն ապահովվում է ո՛չ միայն սոցիալ-տնտեսական, այլև գաղափարական ու բարոյական գործոններով: Հասարակության միասնության ամրապնդումը, սովետական ժողովրդի պատմական նոր հանրության ամրացումն այնքան է հաջող ընթանում, որքան լրիվ ու խոր են լայն մասսաները գիտակցում աշխատավորների, հասարակության և անհատի արմատական շահերի միասնությունը: Միլիոնավոր զանգվածների գիտակցական մասնակցությունը պետական և հասարակական բոլոր հարցերի լուծմանը սոցիալիստական հասարակության քաղաքական կյանքի կարևորագույն գործոնն է: Որքան բարդ ու վիթխարի են մեր խնդիրները էկոնոմիկայի և քաղաքականության բնագավառում, այնքան ավելի բարձր են սովետական մարդու քաղաքացիական ակտիվության նկատմամբ եղած պահանջները, ավելի հրամայական է սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման անհրաժեշտությունը: Փորձը համոզիչ ցույց է տալիս, որ հասարակությունը կառավարելու

*ման սկզբունքային նշանակությունը: Համամարդկայինի և դասակարգայինի հարաբերակցության հարցի անդեմ ըմբռնումը տանում է կամ մեկը մյուսի հակադրման կամ պատմական կատեգորիաների վերացական, վերպատմական մեկնությունների, նրանց սոցիալական բովանդակության ամլացման: Ներկայումս հարկ է լինում հաճախ հանդիպել սոցիալական երևույթների նկատմամբ մարքսիստական դասակարգային մոտեցումը միակողմանի հայտարարելու, «լրացնելու» կամ վերացականով, «համամարդկայինով» այն փոխարինելու ռևիզիոնիստների ակտիվ փորձերին: Լավ հայտնի է, թե, օրինակ, ինչ են նշանակում «մարդկային կերպարանքով սոցիալիզմի մոդելները», որոնք սոցիալիզմին բացահայտորեն թշնամի շրջաններում քաղաքական ոլորտում մոդայիկ են դարձել: Սոցիալիզմի, դեմոկրատիայի, մարդասիրության, ազատության վերաբերյալ վերացական, ոչ դասակարգային հարցադրումներն արտահայտում են, ըստ էության, բուրժուազիայի շահերը: Այդ ճիշտ է ոչ միայն տեսականորեն, այլև հավասարապես գործնականորեն, որովհետև բոլոր հակահեղափոխական շարժումները սովորաբար քողարկվում են ազատության լոզունգներով, անպուսպ և նույնքան կեղծ արցունքներ թափելով մարդասիրության և անձի պաշտպանության համար:*

*Սոցիալիզմի վերաբերյալ բուրժուական ինֆորմացիայի, որպես կանոն՝ կեղծ ինֆորմացիայի, հեղեղը սովորաբար քողարկվում է բարձր և հնչյուն ֆրազներով ազատության, հումանիզմի, առաջադիմության մասին և այլն: Իր ժամանակին Լենինը վայրույթով և դիպուկ ծաղրում էր ոչ դասակարգային սոցիալիզմի գաղափարը: Նա գրում էր. «Ով թե՛ Եվրոպայի, թե՛ Ասիայի փորձից հետո խոսում է ոչ-դասակարգային քաղաքականության և ոչ-դասակարգային սոցիալիզմի մասին, նրան արժի ուղղակի վանդակ նստեցնել և ցուցադրել որևէ ավստրալիական կենգուրուի կողքին» (Երկեր, հատ. 18, էջ 739—740):*

*Հասկանալի է, համամարդկային և դասակարգային կատեգորիաների հարաբերակցությունն ամենևին հասարակ բան չէ: Կոմունիզմը դասակարգայինը և համամարդկայինը չի հակադրում, ընդհակառակը, նա հանդես է գալիս որպես այն ամեն մի արժեքավորի և լավագույնի ժառանգորդը, որ ստեղծել է մարդկությունը: Բայց եթե հատակ դասակարգային դիրքերը կորչում են այնպիսի կարևոր պրոբլեմներ քննելիս, ինչպես, օրինակ, ազգայինը ու ինտերնացիոնալականը, ազգայինը և նացիոնալիստականը, ժողովուրդը և ազգը, ապա դա չի կարող չխանգարել աշխատավորների իսկական ինտերնացիոնալ դաստիարակությանը: Դա առավել ևս թույլատրելի չէ այնպիսի պայմաններում, երբ բուրժուազիայի գաղափարախոսները համառ ջանքեր են գործադրում, որպեսզի մի շարք արմատական աշխարհայեցողական կատեգորիաների մարքսիստական-լենինյան ըմբռնումը նենգափոխեն ժամանակից դուրս, ճապաղ, վերջին հաշվով, վերդասակարգային մեկնություններով:*

*Փորձը համոզիչ վկայում է, որ արդի աշխարհում հակամարտ սոցիալական ուժերի սուր պայքարի պայմաններում, միայն հետևողական պրոլետարական-դասակարգային դիրքն է իր մեջ կրում առաջադիմական բովանդակություն, միայն դա է տոգորված ստեղծագործական ինաստով:*

*Իմպերիալիստական պրոպագանդան ամեն կերպ նացիոնալիստական նախապաշարմունքներ է բորբոքում, որոնք երբեմն արտահայտվում են նաև սոցիալիզմի պայմաններում: Նացիոնալիզմը չարաշահում է հայրենասիրության գաղափարը, ձգտելով նրա մեջ նացիոնալիստական տարրեր մտցնել: Այդ, մասնավորապես, իր արտահայտությունն է գտնում պատմության վերաբերյալ աշխատություններում (որոնք հայտնվում են նաև մեզ մոտ), որոնցում անտեսվում է դասակարգային մոտեցումը ազգային պատմության նկատմամբ. այն, այդ պատմությունը, «բարելավվում է», նրա ռեակցիոն գործիչները գունազարդվում են, իդեալականացվում, որոշ փաստեր անթաքիրեն մոռացության են մատնվում, իսկ որոշն էլ պատկերացվում միտումնավոր: Բայց անցյալի ամեն մի չափազանցում, նրանցով չափից դուրս զմայլվելը հեռացնում են պատմական ճշմարտությունից, անխուսափելիորեն կոծկում դասակարգային հակասություններն այս կամ այն ժողովրդի պատմության մեջ, աղճատում նրա կուլտուրայի զարգացման մեջ եղած առաջադիմական և ռեակցիոն տենդենց-*



*ների հակադրությունն ու անհաշտելիությունը: Իսկ վերջին հաշվով անցյալի հոգևոր արժեքների գնահատումը ներկայացվում է որպես բուրժուական գաղափարախոսների կողմից քարոզվող կուլտուրայի զարգացման «միասնական հոսանք»:*

*Սոցիալիստական հայրենասիրությունն անհամատեղելի է ազգային սահմանափակության ու շովինիզմի ամեն մի դրսևորման հետ: Հասարակական զարգացումը ամենևին չի ոչնչացրել և չէր կարող ոչնչացնել ազգայինի և ազգայնականի, հայրենասիրականի և շովինիստականի տրամագծորեն տարանջատ հատակ սահմանները: Տեղի է ունենում այլ բան. հայրենասիրության զգացմունքի լիցքավորում ինտերնացիոնալիստական նոր բովանդակությամբ, նրանց վերաճում-անցումն ազգային պատկանելությամբ սևեռված սահմաններից:*

Սոցիալիզմի շահերը պահանջում են՝ մշտական ուշադրություն ինտերնացիոնալիստական դաստիարակության հարցերին: Դրանք զգալի տեղ են գրավում բոլոր հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների աշխատանքներում: Ռուսաստանի Ֆեդերացիայի ինքնավար հանրապետություններում ու մարզերում, Ուկրաինայում, Ուզբեկստանում, Լատվիայում, Ղազախստանում, Լիտվայում, Կիրգիզիայում և մյուս հանրապետություններում գաղափարական զանազան միջոցներով լայնորեն պարզաբանվում է կուսակցության ազգային քաղաքականության էությունը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության նշանակությունը յուրաքանչյուր հանրապետության բարգավաճման համար: Կատարվում են ընթերցումներ, դասախոսություններ, տեսական կոնֆերանսներ, թեմատիկ երեկույթներ, ուր պրոպագանդվում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու պրակտիկան: Այդ աշխատանքը կոչված է անհանդուրժողական ոգով դաստիարակել աշխատավորներին նացիոնալիստական նախապաշարմունքների հանդեպ, ինչպես էլ որ դրանք դրսևորվեն: Ինտերնացիոնալիստական դաստիարակության հետաքրքրական և գործարար շատ ձևեր են կենսագործվում Մոլդավիայում: Դրանք ինտերնացիոնալ բարեկամության երեկույթներն են, ավտոագիտգնացքները, որ կազմակերպվում են Ուկրաինայի հարևան շրջանների հետ համատեղ, եղբայրական հանրապետությունների գրականության և արվեստի տասնօրյակները և այլն: Մոլդավիայի ԿԿ Կենտկոմը հաստատել է աշխատավորների ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության առավել բարելավման կոմպլեքսային պլան: Հին սովորույթների դեմ մղվող պայքարում մասսաների սոցիալիստական գիտակցականության զարգացումը Տաջիկստանի և Թուրքմենիայի կուսակցական կազմակերպությունների մշտական ուշադրության կենտրոնում է:

*Ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրությունը կոմունիստների ըմբռնմամբ որևէ չափով միմյանց չեն հակասում. դրանք օրգանապես ձուլված, սերտորեն կապված են մեկ ամբողջության մեջ: Հայրենասեր-ինտերնացիոնալիստներ դաստիարակել, նշանակում է դաստիարակել ժողովուրդների անխախտ բարեկամության ոգով, անդադրում ամրապնդել և զարգացնել սովետական հասարակության սոցիալիստական սկզբունքները, որոնք հիմնված են սոցիալիստական էկոնոմիկայի, քաղաքականության, գաղափարախոսության և կուլտուրայի միասնության վրա: Հայրենասեր-ինտերնացիոնալիստներ դաստիարակել, նշանակում է սովետական մարդկանց դաստիարակել բոլոր երկրների աշխատավորների նկատմամբ հարգանքի, շահագործման ու ճնշման հանդեպ ատելության ոգով, իմպերիալիզմի դեմ մղվող բոլոր ժողովուրդների դասակարգային համերաշխության և եղբայրական փոխադարձ օգնության ոգով, հանուն ազգային և սոցիալական ազատագրության:*

*Կոմունիստական աշխարհայացքի ձևավորման պրոբլեմը բազմապլան է:* Գաղափարական-քաղաքական դաստիարակության կենտրոնական խնդիրը եղել և մնում է հեղափոխական տեսության խոր տիրապետումը, մարքսիզմ-լենինիզմի ուսումնասիրումն ու լայնորեն պրոպագանդումը: *Կյանքը հատուկ պահանջներ է առաջադրում կադրերի տեսական կրթությանը: Ինչպես փաստերը ցույց են տվել, որոշ կոմունիստներ մարքս-լենինյան տեսությունը չեն ուսումնասիրում կամ այդ բանն անում են դեպքից դեպք և ծայրահեղ մակերեսորեն: Հաճախ կարևորագույն դրույթներն ուսումնասիրվում են կյանքից*

ցիան: Սակայն չի կարելի չնկատել այն, որ աշխատանքի վարձատրման ու պարգևատրման գործում եղած թերությունները, բարոյական խթանների թերագնահատումը կարող են շահախնդրության, ամեն տեսակ խնամատական տրամադրությունների համար բարենպաստ իրադրություն ստեղծել:

Որոշ մարդկանց պրակտիկայում անձնական նյութական բարեկեցության նկատմամբ հոգատարությունը վերածվում է ընչաքաղցության, մոռացվում հասարակության շահերը, որը հաճախ փոխակերպվում է հասարակության հաշվին հարստանալու ձգտման: Բացասական երևույթների դեմ մղվող պայքարում կարևոր է օգտագործել ամեն ինչ. թե՛ դաստիարակչական միջոցներ, թե՛ հասարակական ներգործության ուժ, թե՛ սովետական օրենքները: Այդ տեսակետից ուսանելի է Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի փորձը՝ մարդկանց գիտակցության մեջ եղած մասնավոր սեփականատիրական և անցյալի մյուս մնացորդների հաղթահարման, հակահասարակական արարքների դեմ պայքարն ուժեղացնելու ասպարեզում: Այստեղ շատ բան է արվում կադրերին առաջադրվող պահանջկոտությունը բարձրացնելու, կուսակցական և պետական կարգապահությունն ամրապնդելու համար, կատարելագործվում է ղեկավար աշխատողների գաղափարական դաստիարակության կազմակերպումը:

Հատկապես սահմանագատում կա սոցիալիստական հասարակության քաղաքացու նյութական շահերի և հարստանալու բուրժուական շահատենչության միջև: Բացառիկ կարևոր է ճիշտ պատկերացում կերպավորել նյութական բարեկեցության բարձրացման հետ կապված խնդիրների վերաբերյալ, ակտիվորեն հանդես գալ բարեկեցության միակողմանի, աղքատիկ ըմբռնման դեմ, որը ծնում է քաղքենիություն, եսասիրություն, փողի և իրերի պաշտամունք, ինչը որ արգելակում է հոգևոր պահանջմունքների զարգացումը: Նյութական բարեկեցության հենց այդպիսի հարաբերություններ են ջանում արմատավորել բուրժուական գաղափարախոսները, որոնք համառաբար պրոպագանդում են «սպառողական հասարակության» գաղափարը:

Աշխատանքային խանդավառության կարևոր աղբյուր են կոմունիստական բարձր իդեալները: Վսեմացնել աշխատանքը, զարգացնել ընդհանուրի օգտին աշխատելու անհրաժեշտության գիտակցությունը, հասնել այն բանին, որ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը դառնա յուրաքանչյուր աշխատողի վարքագծի նորմ՝ ահա հենց դա է գաղափարական-բարոյական խթանման, դաստիարակչական ողջ աշխատանքի կարևորագույն խնդիրը:

Հասկանալի է, անհատի զարգացումը տեղի է ունենում ո՛չ միայն աշխատանքում, այլև տանը, ընտանիքի շրջապատում, ազատ ժամերին: Անհատի բազմակողմանի, ներդաշնակ զարգացումը անխզելիորեն կապված է ազատ ժամանակի ռացիոնալ, խելացի օգտագործման պրոբլեմների հետ: Այդ ժամանակում մարդն առանձնապես ակտիվորեն կարող է հոգեպես հարստանալ, զբաղվել ֆիզկուլտուրայով, սպորտով, ինքնուրույն ստեղծագործությամբ: Սովետական միլիոնավոր մարդիկ նյութական ու կուլտուրական արժեքների ակտիվ ստեղծողներն են: Մեր ծրագրային նպատակը՝ ներդաշնակորեն զարգացած մարդու, բարձր գիտակցության տեր, հոգեպես հարուստ, ֆիզիկապես կատարյալ մարդու դաստիարակումն է: Ելնելով դրանից, մեր ամբողջ աշխատանքը— լինի քաղաքական, թե բարոյական, իրավական, թե աթեիստական, աշխատանքային, թե ֆիզիկական, հառնում է որպես կոմպլեքսային դաստիարակություն, որի բոլոր կողմերն ակտիվորեն փոխադարձաբար ներգործում են:

## IV

Արտադրություն և գիտություն, արտադրություն և կուլտուրա, արտադրություն և նոր մարդու ձևավորում՝ հասարակական կյանքի այս բոլոր ոլորտները փոխադարձ սերտ կապերի մեջ են և լուրջ հաջողությունները հնարավոր են միայն դրանց միասնական փոխներգործության պայմաններում: Գաղափարադաստիարակչական աշխատանքի առանձնահատկությունը, նրա խիստ պատասխանատու բնույթն այն է, որ վերջինս առնչվում է մարդու գիտակցու-



թյան, նրա հայացքների ու տրամադրությունների հետ: Եվ այստեղ որոշումներում ու գործողություններում պետք է առանձին ճշտություն, պատասխանատվություն, քանի որ ամեն մի սխալ քայլ գրեթե անխուսափելիորեն փոխակերպվում է գաղափարական-քաղաքական բնույթի կորուստների, որոնց հաղթահարման համար հարկավոր են նոր ջանքեր և շատ ժամանակ: Պետք է գիտենալ, որ միայն լավ դիրեկտիվներով կամ ցուցումներով կարելի է վճռել խնդիրների մի մասը: Հարկավոր է տքնաջան, կշռադատված, տևական ժամանակի համար նախատեսվող աշխատանք: Հասել է ժամանակը, և մենք ունենք բոլոր՝ օբյեկտիվ ու սուբյեկտիվ կարգի, հնարավորությունները, դաստիարակչական ողջ աշխատանքն իր ամբողջության, օրգանական միասնության մեջ քննարկելու համար: Այլ խոսքով, երբ որևէ անցանկալի երևույթ է նկատվում այս կամ այն կոլեկտիվի, ավանի, քաղաքի կյանքում, ապա աննորմալությունը վերացնելու համար ինչ-որ մի յուրահատուկ միջոցը կարող է անբավարար լինել, եթե ցանկանում ենք դրական կայուն արդյունքների հասնել: Կարևոր են ոչ միայն ակնթարթ, տվյալ իրադրության մեջ ակտիվորեն ներգործող միջոցները, այլև երկարատև միջոցառումները, որոնք կարող են արգասաբեր լինել առաջիկա ամիսներին կամ նույնիսկ տարիներին: Այդպիսի մոտեցումը արմատական, ավելի հուսալի է դարձնում բացասական երևույթների դեմ մղվող պայքարը: Այն բանի երաշխիքը, թե նման երևույթները կչքանան, ի հայտ չեն գա ոչ վաղը, ոչ մյուս օրը, կարող են լինել միայն սոցիալ-քաղաքական, էկոնոմիկա-տնտեսական և գաղափարա-դաստիարակչական միջոցառումների սերտ միացումն ու խելացի զուգակցումը: Այդ տեսակետից առանձնապես արդյունավետ է սոցիալիստական կացությունից մշտապես ծնվող ամեն մի դրականի հետևողական պաշտպանությունը:

Քաղաքականության, էկոնոմիկայի, սոցիալական գործոնների ամրապնդվող փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը գաղափարական գործունեության կազմակերպման նկատմամբ գիտական մոտեցման մեկնակետն է: Եթե այդ տեսակետից քննարկենք հարցը, ապա, անվիճելիորեն պահանջվում է ավելի բարձրացնել գաղափարական-դաստիարակչական աշխատանքի որակական մակարդակը, հատկապես դրա գործունեությունը: Խոսքը վերաբերում է նրան, որ պրոպագանդայի, դաստիարակության ձևերն ու մեթոդները համապատասխանեցվեն աշխատավորների աճած սոցիալական փորձին, նրանց կուլտուրային ու կրթությանը, քաղաքական ակտիվությանը:

Այլ խոսքով, առաջին պլանն են մղվում գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, գործունեությունը, այսինքն՝ որակական կողմը: Դա պահանջում է վճռականապես վերացնել պրոպագանդայում և ագիտացիայում եղած թերությունները, հաղթահարել ֆորմալիզմի, դեկլարատիվության և սխեմատիզմի տարրերը, ամբողջ գաղափարա-քաղաքական աշխատանքում հետևողականորեն կիրառել արդիականության հիմնական պրոբլեմների վերաբերյալ կուսակցության մշակած հայացքները, ճշտությամբ և բազմակողմանիորեն հաշվի առնել կուսակցական կազմակերպությունների գործունեության կոնկրետ պայմանները: «Ինչպես հարկն է կարողանալ,— ասել է Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում,— աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար չափով հաղորդել մեր գաղափարական համոզվածության ամբողջ ուժը, ինչպես հարկն է խիստ ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակության գործին՝ ահա որոնք են մեր գլխավոր խնդիրներն այդ բնագավառում» (Լ. Ի. Բրեժնև, Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, «Հայաստան» հրատ., 1971 թ., էջ 142):

Տարեցտարի սրընթաց աճում է մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների սոցիալական ակտիվ դերը: Թերթերի, հանդեսների և պարբերական հրատարակությունների միանվագ տիրաժը միայն 1965—1970 թթ. աճել է ավելի քան 106 միլիոն օրինակով: Ներկայումս սովետական մարդիկ յուրաքանչյուր օր ստանում են ավելի քան 3,6 միլիոն օրինակ գրքեր ու բրոշյուրներ: Զգալիորեն աճել է ռադիոհաղորդումների կայանների հզորությունը, հինգ տարվա ընթացքում ավելի քան երկու անգամ ավելացել

և երկրամասային կենտրոններից ուղարկված պրոպագանդիստական խմբերը: Երկրի շատ քաղաքներում «Գիտելիք» ընկերությունը ներքին ու արտաքին քաղաքականության արդիական պրոբլեմների լեկտորիումներ բացեց: Աշխատանքային կոլեկտիվներում և բնակավայրերում կանոնավոր հանդես են գալիս դասախոսներ, զեկուցողներ, քաղինֆորմատորներ, զրույցներ են ունենում ագիտատորները: ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերն ուսումնասիրում են ժողովրդական համալսարանների 5 միլիոն ունկնդիրներ և 2,5 միլիոն մարդ, որոնք պարապում են կոմունիստական աշխատանքի դպրոցներում: Մի շարք հանրապետություններում ու մարզերում կազմակերպվել են համագումարի նյութերի ուսումնասիրության քաղաքական դպրոցներ:

Համագումարի որոշումների պարզաբանման ու պրոպագանդման աշխատանքին ակտիվորեն ներգրավվել են մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը: Դրանք լայնորեն պրոպագանդում են առաջավոր կոլեկտիվների աշխատանքային նախաձեռնությունը, լուսաբանում սոցիալիստական մրցության ընթացքը: Պրոպագանդայի բազմապիսի, մատչելի և գործուն ձևերի ակտիվ որոնումներ են կատարվում:

Համագումարի նախապատրաստությունը և Կենտկոմի հաշվետու զեկուցման ու համագումարի մյուս նյութերի պրոպագանդումը մեծ դպրոց հանդիսացան գաղափարական ճակատի աշխատողների համար: Պրոպագանդիստներն ու դասախոսները, մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի, կուլտուրայի հիմնարկությունների աշխատողները, քաղինֆորմատորներն ու ագիտատորները ցուցադրում են բարձր հասունություն մարքսիզմ-լենինիզմի գաղափարները մասսաների շրջանում ծավալելու, նրանց քաղաքական պարզորոշ նպատակներով զինելու, հանուն հայրենիքի աշխատանքի կոչելու գործում:

Համագումարի որոշումների ու նյութերի պրոպագանդումը կարճատև խնդիր չէ, այն նկատի ունի երկարատև ժամանակաշրջան: Դեռ տևական ու համառ աշխատանք պետք է կատարվի: Չի կարելի չտեսնել, որ դրական մեծ արդյունքների հետ միասին նաև էական թերություններ կան այդ աշխատանքում: Մամուլում հրապարակված ընդհանուր տեսական բնույթի որոշ հոդվածներ մակերեսային են, չեն բացահայտում պրոբլեմների էությունը: Մամուլում եղած առանձին ելույթներ անհրաժեշտ խորությամբ ու հետևողականությամբ չեն լուսաբանում համագումարի առաջադրած տեսական պրոբլեմները: Թերություններ կան ցուցադրական ագիտացիայում, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքում: Հայտնի են փաստեր, երբ համագումարի որոշումների պրոպագանդմանը ղեկավար աշխատողները, հատկապես տեղերում, չեն մասնակցում:

Կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումները, պրոպագանդայի մարմինները ձգտում են ամրապնդել գաղափարական աշխատանքի այն մեծ վերելքը, որով նշանավորվեց հետհամագումարյան ժամանակաշրջանը, է՛լ ավելի ակտիվորեն և նպատակային օգտագործեն գաղափարական բոլոր միջոցները:

Աշխատավորների ստեղծագործական եռանդի անդադրում զարգացումը, կոմունիստական շինարարության հաջողության համար յուրաքանչյուր մարդու պատասխանատվության բարձրացումը, սովետական մարդկանց բարձր բարոյա-քաղաքական հատկությունների ձևավորումը կուսակցական բոլոր կազմակերպությունների, գաղափարական ճակատի աշխատողների կարևորագույն խնդիրն է, որը բխում է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից:

«Коммунист», № 10, 1971 թ.



Կ. Ք. ՎԵՐՄԻՇԵՎ

Տնտեսական գիտությունների թեկնածու

# ԳԻՏԱԿԱՆ ԿԱՆԽԱՏԵՍՈՒՄԸ ԵՎ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ տնտեսական գիտության առջև կանգնած խնդիրների թվում մատնանշված է երկարաժամկետ կանխատեսումների անհրաժեշտությունը. «տնտեսական և սոցիալ-քաղաքական կարևորագույն խնդիրների իրագործումը պահանջում է ոչ թե հինգ տարի, այլ անհամեմատ երկար ժամանակ: Այդ կապակցությամբ ծառանում է ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի հեռանկարային երկարաժամկետ պլանավորման հարցը, որը հիմնվեր երկրի բնակչության աճի, ժողովրդական տնտեսության պահանջմունքների, գիտատեխնիկական առաջընթացի կանխատեսումների վրա» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, 1971, էջ 104):

Տնտեսական քաղաքականության ասպարեզում կուսակցությունը խնդիր է դնում ճիշտ որոշել արտադրական ռեսուրսների ձեռքբերման ու օգտագործման ուղիները: Ելնելով կոմունիստական շինարարության խնդիրներից, կուսակցության համագումարը պատրաստակամություն հայտնեց շահագրգռված պետությունների հետ համատեղ մասնակցելու այնպիսի պրոբլեմների լուծմանը, ինչպիսիք են բնական միջավայրի պահպանումը, էներգետիկ և բնական այլ ռեսուրսների յուրացումը: Ոչ միայն ներկայիս սերունդը, այլև հաջորդ սերունդները պետք է հնարավորություն ունենան օգտվելու այն բոլոր բարիքներից, որ տալիս է հայրենի բնությունը: Մեր պետությունը պատրաստ է մասնակցելու նաև բնության պահպանության և նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջազգային կոլեկտիվ ձեռնարկումներին: Այստեղից պարզ է դառնում, որ երկարաժամկետ կանխատեսումներն առնչվում են բնական ռեսուրսների և վերջիններիս ռացիոնալ օգտագործման հետ:

Հասարակական երևույթների գիտականորեն կանխատեսելու հիմունքները մշակել են մարքսիզմի կլասիկները: Դրա վառ ապացույցը կապիտալիստական հասարակության կոմունիստականի փոխարկվելու անխուսափելիության մարքսյան դրույթն է: Զարգացնելով ու կոնկրետացնելով գիտական կոմունիզմի հիմնադիրների ուսմունքը նոր պայմաններում Վ. Ի. Լենինը

հասարակական երևույթների գիտական կանխատեսման սկզբունքները կիրառեց սոցիալիստական հասարակության պրակտիկայում։ Սոցիալիստական պետության սկզբնավորման շրջանում նա նշում էր հեռանկարային պլանավորման առաջատար դերը։ Չի կարելի աշխատել չունենալով այնպիսի պլան, որը նկատի ունենա տևական ժամանակաշրջան և լուրջ հաջողություն։

Սովետական առաջին երկարաժամկետ հեռանկարային կանխատեսման պլանը Լենինի հանձնարարությամբ մշակված ԳՈԷԼՌՕ-ի պլանն էր։ Հետագա տարիներին ՍՍՀՄ-ում հսկայական փորձ ձեռք բերվեց ընթացիկ և հեռանկարային պլանավորման բնագավառում։ Սովետական հեռանկարային կանխատեսումներն իրենց տեսական հիմնավորվածությամբ ու գործնական առումով գերազանցում են արտասահմանյան պրակտիկային։ Բնորոշն այն է, որ սովետական կանխատեսումները բարձրացված են օրենքի աստիճանի և դրանց կիրառումն ապահովվում է պետության կողմից։

Հանդես գալով ՍՄԿԿ XXIV համագումարում, ՍՍՀՄ պետպլանի նախագահ Ն. Կ. Բայբակովը նշեց, որ հնգամյա պլանը առավել հանգամանալից հիմնավորելու համար անհրաժեշտ է հաշվի առնել ապագայի 10—15 տարվա երկարատև պլանավորման ժամկետները։ Համագումարի որոշման մեջ ընդգծվեց, որ այդպիսի պլանավորումը պարտադիր է երկրի համապատասխան կազմակերպությունների համար և այն պետք է մանրազնին մշակվի համաձայն արտադրաուժերի առավել զարգացման և տեղաբաշխման ընդունված ծրագրի։

Եթե հնգամյա պլանները մշակելիս անհրաժեշտ է նախապես ունենալ 10—15 տարվա հեռանկար, ապա, ըստ երևույթին, հեռանկարային պլանների մշակման ժամանակ հարկ է ընդգրկել ավելի տևական ժամանակ, թեկուզ ընդհանուր ձևով։ Եթե առաջին խնդիրը անմիջական պետական գործ է, ապա հեռավոր ապագայի հետ կապված հարցերը հիմնականում մշակվում են գիտական շրջաններում։ Հեռանկարային կանխատեսումները կարող են նաև տեղական բնույթ կրել, արտացոլել օժանդակ հարցեր։ Այստեղ կարծարծվեն նաև բնության ու հասարակության փոխհարաբերության, բնական ռեսուրսների օգտագործման, բնակչության, արտադրողական ուժերի զարգացման ու տեղաբաշխման պրոբլեմները։

Երկարաժամկետ կանխատեսումների առավել բարդ հարցերից է սոցիոլոգիական ասպեկտը։ Պլանավորելիս կարևոր է նախատեսել բնակչության ապագա քանակը, նրա վերարտադրությունը, վերաբնակությունը, զբաղվածության կառուցվածքը։ Բնակչության քանակը որոշելու համար հեռանկարային պլանավորման հիմքը դեմոգրաֆիական գործոնն է, որը ենթադրում է ուսումնասիրման մի շարք եղանակների հաշվառում։ Այս հանգամանքն առավել ակտիվ հանդես է գալիս վերաբնակեցման և քաղաքաշինարարության կառուցվածքի հարցերի լուծման պրոցեսում։ Դեմոգրաֆիական նման ուսումնասիրությունը պահանջում է հեռավոր ապագայի իմացություն, առենք կառուցվող շենքերի դիմացկունության գործակիցը։

Ապագայի ռեսուրսների կանխատեսման բարդություններից է արտադրողական ուժերի առանձին տարրերի փոխադարձ կապի հաշվառումը։ Այդ առթիվ Ա. Մ. Ռումյանցևը գրում է. «Ամեն մի կանխատեսում պետք է կոմպլեքսային բնույթ կրի և առանց բացառության հաշվի առնի բոլոր գործոնների բարդ փոխներազդեցությունը։ Նման կարծիք արտահայտում է Ա. Ա. Իվանչենկոն. «Երկարաժամկետ հեռանկարների համար անհրաժեշտ է փոխադարձ կապակցության մեջ ընդգրկել հետևյալ պրոբլեմները՝ բնական ռեսուրսների, բնակչության տեղաբաշխման, նյութական արտադրության զարգացման գնահատումները՝ հաշվի առնելով տեխնիկական առաջընթացը և հաշվեկշռային շաղկապվածությունները. նոր տերիտորիայի յուրացումը, վերաբնակեցման և միջշրջանային արտադրական կապերի կատարելագործումը, շրջանների տնտեսական զարգացման մակարդակի հավասարեցումը»։



ՍՍՀՄ ԳԱ էկոնոմիկայի բաժանմունքին կից 1970 թվականին հրավիրված տնտեսական զարգացման երկարաժամկետ կանխատեսումների մեթոդոլոգիական հարցերի վերաբերյալ գիտական կոնֆերանսի «Հանձնարարականներ»-ում կանխատեսումների մշակման հիմնական ուղղությունների թվում հաշվի են առնվում՝ գիտության ու տեխնիկայի զարգացումը և դրա ազդեցությունը ժողովրդական տնտեսության վրա, դեմոգրաֆիական, բնական ռեսուրսների, կենսաբանական միջավայրի վիճակը ըստ հիմնական խմբերի, տնտեսական, սոցիալական կանխատեսումները։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նայած հետազոտվող ժամանակաշրջանի տևականությանը, կանխատեսումներ կատարելու մեթոդներն ու ձևերը պետք է տարբերակվեն։ Երկարաժամկետ պլանավորման համար ցուցանիշների ոլորտը նեղանում է, բայց դրա փոխարեն ընդլայնվում է պրոբլեմների տերիտորիալ ընդգրկումը։ Դժվար է պատկերացնել երկրի այս կամ այն հանրապետության ու մեծ վարչական շրջանների վերաբերմամբ կազմված հեռավոր կանխատեսման հավաստիությունը։ Մի շարք հարցերի նկատմամբ խորազնին մոտեցում է անհրաժեշտ, ինչպես, օրինակ, շրջապատող բնական միջավայրի՝ օդի, մթնոլորտի, օվկիանոսի նկատմամբ մարդկային գործունեության վերաբերյալ և այլն։

Անցյալում երկարաժամկետ կանխատեսումները աննշան ազդեցություն էին թողնում հեռանկարային պլանավորման վրա։ Մարդու տնտեսական գործունեությունը շոշափելի հետք չէր թողնում բնության և նրա ռեսուրսների վրա։ Ներկայումս, առավել ևս ապագայում, այդ գործունեության մասշտաբներն այնքան են աճում, որ կարող են էական փոփոխություններ մտցնել բնության մեջ դարերով գոյություն ունեցող բնական համամասնությունների վրա։ Առաջադիմակա՞ն կլինեն արդյոք այդ փոփոխությունները, թե՞ վնաս կհասցնեն դրանք հասարակական կյանքին՝ որոշ չափով պայմանավորված են նաև վաղօրոք կատարված երկարաժամկետ կանխատեսումից՝ ինչպես ըստ ռեսուրսների հնարավորությունների, այնպես էլ ըստ արտադրաուժերի ռացիոնալ զարգացման ուղղությունների։ Դրանում ենք գտնում երկարաժամկետ կանխատեսումների, որպես ժամանակակից պլանավորման ու արտադրաուժերի տեղաբաշխման հիմքի, գերազանցող անհրաժեշտությունը։

Երկարաժամկետ կանխատեսումը պետք է գնահատի այն հնարավոր ռեսուրսները, որպիսիք, ըստ գիտելիքների ժամանակակից մակարդակի, կարող է ունենալ ապագա հասարակությունը։ Առաջին փուլում ավելի ճիշտ կլինի ռեսուրսների «կայուն» մասը դիտել «անժամկետ» կանխատեսման ասպեկտով։ Ինչպես, առենք, տերիտորիալ հնարավորությունները բնակչության վերաբնակեցման համար, գյուղատնտեսության զարգացումը, խմելու ջրի պաշարները՝ դրանց առավել ռացիոնալ օգտագործմամբ հանդերձ, հանքային

և էներգետիկ ռեսուրսների որոշակի պաշարները։ Դրանց գնահատությունը կենսագործվում է ակներև տեխնիկական առաջընթացի հաշվառումով։

Առաջնակարգ նշանակություն ունի գլխավոր արտադրաուժի՝ բնակչության քանակի և ապագա աշխատանքային ռեսուրսների իրական գնահատությունը, մարդու վերարտադրության վրա ազդող գործոնների հայտնաբերումը, բնակչության նպատակահարմար վերաբնակեցման և նրանց զբաղվածության պրոբլեմը։ Այդ հիման վրա հնարավոր է նաև անժամկետ կանխատեսման պարբերացումը։

Կանխատեսումների ժամանակ թերևս ամենաբարդն ապագայի տեխնիկական առաջընթացի նյութական հնարավորությունների գնահատումն է։ Ինչպիսի՞ն կլինի տեխնիկան և ի՞նչ չափով այն կարող է հաշվի առնվել ռեսուրսների օգտագործման ժամանակ։ Այդ հարցում հնարավոր է սոսկ ենթադրել ապագա զարգացման ուղղությունը, ուր կարևոր տեղ կգրավեն կիբեռնետիկան, քիմիական փոխարկումներն ու միացությունները, արդյունաբերական սինթեզի բիոլոգիան, թափանցումն ընդերքի խորխորատների գաղտնիքները, ներգործությունը շրջանների կլիմայական պայմանների վրա և այլն։ Ի. Վ. Բեստուժև Լադան ենթադրում է, թե «Գիտական հայտնագործությունները սկզբունքորեն չեն կանխատեսվում։ Հենց այդ պատճառով դրանք հայտնագործություններ են, «Կանխատեսումները չեն կանխորոշում այն, ինչը որ ակնհայտորեն կանխորոշելի չէ։ «Խոսքը վերաբերում է գիտության զարգացման պլանավորման գիտական հիմունքներին»։ Մենք կարծում ենք, որ քանի դեռ գիտական հայտնագործությունները կանխորոշելի չեն, ուրեմն և դրանից չի հետևում, թե դրանց կանխատեսումը անառարկայական է։ Հենց տնտեսական կանխատեսման շնորհիվ է ճյուղային գիտությունն ի վիճակի որոնելու հասարակության ներդաշնակ զարգացման ինքնատիպ լուծումներ։

Խիստ էական է նաև ապագա զարգացման մասշտաբների բացարձակ նշանակության բացահայտումը։ Այդ բնագավառի գնահատությունը կարող է դիտվել որպես առավելագույն չափով մոտավոր՝ խիստ նշանակալի հակադրություններով հանդերձ։ Կանխատեսման այդ մասի վրա ազդեցություն կունենա այն կոնցեպցիան, թե ինչ տեմպերով է զարգանալու հասարակությունը՝ հարաճուն, ժամանակակից, թե նվազող։ Կարծում ենք, որ հասարակության պահանջմունքների բավարարման համեմատ հասարակական արտադրության աճի տեմպերն անընդհատ կմերձենան բնակչության աճի տեմպերին։

Երկարաժամկետ կանխատեսման կարևոր տարբերիչ գիծը արտադրապրոցեսներում մարդու ֆիզիկական աշխատանքի մասնակցության կրճատումն է, արտադրաուժերի զարգացման բնագավառում մարդու մտահղացումների կենսագործման հնարավորությունների ու մասշտաբների վիթխարի մեծացումը։ Նյութական ապահովվածությունն ամենուրեք շեշտակիորեն աճում է։

Բնության և հասարակության միջև եղած փոխհարաբերություններում մարդու գործունեության մասշտաբներն ու կանխատեսումն անընդհատ աճել են, իսկ պոտենցիալ հարստությունները, չհաշված հավերժական աղբյուրները», կսկսեն պակասել, թեև դրանց հետ միասին հետազոտված պաշարները կարող են նաև աճել։ Ընդ որում, հարկավոր է նկատի ունենալ, որ բնության մեջ ոչ մի բան չի չքանում։



Հաստատելով գիտության մեջ կանխատեսումներ կատարելու անհրաժեշտությունը, մենք հաշվի ենք առնում այն ժամկետների տևականությունը, որ ընկնում է գաղափարի ծագման պահից մինչև դրա լայն գործնական արմատավորումը։ Դրա համար պահանջվում է բավականաչափ տևական ժամանակ։

Երկարաժամկետ կանխատեսումը չի կարող սահմանափակվել ապագա հասարակության կոմպլեքսային նկարագրությամբ կամ գալիքի դինամիկ մոդելի գաղափարներով։ Պահանջվում է կոնկրետ որոշել, թե դրանք ինչ պարամետրերով են բնութագրվելու։ Կանխատեսմամբ որոշվող ընդհանուր օրինաչափություններն այս կամ այն չափով կշոշափեն երկրագնդի բոլոր անկյունները։ Նույնիսկ առանձին հայտնագործությունները, ինչպես էլ որ «արտոնագրված» լինեն դրանք, չեն կարող երկար ժամանակ մնալ որպես «առաջին տիրապետողի» սեփականություն։

Երկարաժամկետ կանխատեսումների դեպքում ծագում է նաև այսպիսի մի հարց. ի՞նչն ընդգրկել աշխարհագրական միջավայրի հասկացության մեջ։

Այդ հարցի առթիվ արտահայտվել է Ա. Ա. Մինցը, որը քննարկելով Դ. Լ. Արմանդի, Ի. Պ. Գերասիմովի բնորոշումները և հենվելով Յու. Գ. Սաուշկինի վրա, ռեսուրսների թվին է դասում բնական միջավայրի այն տարրերը, որոնք կարող են օգտագործվել էներգիա, սննդամթերքներ, արդյունաբերության համար հումք արտադրելու նպատակով։ Մնացած տարրերը, որոնք պիտանի չեն վերոհիշյալ պահանջների տեսակետից, բայց անհրաժեշտ են արտադրության ընթացքի համար (թթվածին և օդի խոնավություն, ոռոգելի ջուր, արևի ջերմություն, մթնոլորտային նստվածքներ, հողածածկ շերտեր և այլն), դասվում են բնական պայմանների թվին։ Հարկավոր է համաձայնվել Ա. Ա. Մինցի հետ այն բանում, որ այդպիսի սահմանազատումը որոշ չափով արհեստական է և պայմանական։

Կանխատեսելով պարենային հաշվեկշիռը, մենք նկատի ենք առնում, որ գյուղատնտեսության մթերքների աճը պետք է տեղի ունենա ոչ այնքան գյուղատնտեսական հողատարածությունների ավելացման հաշվին, որքան հողի արդյունավետության աճի շնորհիվ։ Համաշխարհային օվկիանոսի մթերատվությունն ավելացնելու համար առաջին հերթին պահանջվում է պահպանել նրա ջրերի մաքրությունն ու ձկնարդյունաբերության զարգացումը։ Զգալի են «վայրի» բնության մթերային ռեսուրսների ավելացման հնարավորությունները։ Մթերային հաշվեկշռում կընդգրկվի նաև արհեստական սննդի արտադրությունը, սինթետիկ սննդի արտադրությունը կապելով ժողովրդական տնտեսությունը համապատասխան ռեսուրսներով ու պահանջներով ապահովվելու հնարավորության հետ։ Ի դեպ, մամուլում կարծիքներ կան այդ հնարավորությունների անսահմանափակության մասին։

Երկարաժամկետ կանխատեսման մեջ առաջին հերթին անհրաժեշտ է զարգացումն ու տեղաբաշխումը ենթարկել բնության նպատակահարմար օգտագործման պահանջներին։

Կանխատեսումների մեթոդիկան կարելի է հանգեցնել հետևյալին՝ որակական, փորձագիտական գնահատումների նորմատիվ մեթոդներ, տրամաբանական մոդելացում, վիճակագրական մեթոդ և որպես մասնավոր դեպք՝ մաթեմատիկական մոդելացում։

Մեր կարծիքով, երկարաժամկետ կանխատեսման համար անհրաժեշտ է նաև հաշվեկշռային մեթոդը, որ նկատի ունի արտադրաուժերը՝ ըստ իրենց

տարրերի և փոխադարձ կապերի։ Այս հաշվեկշռի հիմքը բնակչությունն է և նրա բազմակողմանի պահանջմունքների բավարարման հնարավորությունը՝ նրա քանակական աճի պայմաններում։ Բայց դրա հետ միասին բարձրանում է նաև նորմատիվ մեթոդի դերը։ Եթե պահանջմունքն, ամբողջովին, անընդհատ աճի, ապա, ըստ առանձին տարրերի, դրա տեսակարար կշիռը կարող է կրճատվել։ Այսպես, նվազում է սննդի օրաբաժինը, քանի որ փոփոխվում է բնակչության զբաղվածության կառուցվածքը. ֆիզիկականը փոխարինվում է մտավոր և ստեղծագործական աշխատանքով։ Իսկ եթե դուրս գանք երկրագնդի առանձին շրջանների շրջանակներից, բնակչության ողջ տեսակարար կշիռը կմեծանա տաք գոտիներում, որտեղ սննդի սպառման նորման, կլիմայական պայմանների հետևանքով, ավելի ցածր է, քան ցուրտ և չափավոր գոտիներում։

Երկարաժամկետ կանխատեսումը փոփոխում է բնակչության վերաբնակեցման վերաբերյալ ավանդույթային պատկերացումը։ Բայց այդ պրոբլեմը լիովին պատկերացնելու համար պահանջվում է շատ հեռավոր կանխատեսում, որովհետև ստեղծված քաղաքներն ապագայում չեն տեղափոխի և շատ թանկ է դրանց վերակառուցումը։ Ստեղծված քաղաքը, չնայած դրա հետագա սահմանափակմանը, շարունակում է աճել։ Արդի զանգվածային ցածրահարկ կառուցապատումների պահպանումը հասարակությանը կզրկի ներկայումս օգտագործվող գյուղատնտեսական հողերից։ Այդ բանը ոչ քիչ չափով կանխել կարող է քաղաքացիական չափավոր բարձրադիր շենքերի (բայց ամենևին էլ ոչ գերքաղաք աշտարակների) շինարարության անցնելը լայն ծավալով, և, որտեղ այդ հնարավոր է ըստ տեխնոլոգիական պայմանների, հրաժարումը մեկ հարկանի կառուցումներից։ Շինարարության այդ ուղղությունն անհրաժեշտ է արմատավորել հենց հիմա՝ այն արտացոլելով զարգացման արդի տարեկան և հնգամյա պլաններում ու առանձին կառուցապատումների նախագծերում։

Կանխատեսողի առաջ դրվում է խմելու ջրի բարդ պրոբլեմը։ Մարդկային հասարակության ապագա պահանջմունքներն ապահովելու համար անհրաժեշտ է մի ամբողջ շարք մանր ու խոշոր միջոցառումներ իրականացնել, որոնց թվում կարևոր տեղ կգրավի ջրի կրկնակի օգտագործումը նրա շրջապտույտում։ Իսկ առավել անհետաձգելի և համընդհանուր խնդիրը գետերի և ջրամբարների մաքրության պահպանումն է։

Հանքային ռեսուրսների հարցում գնալով ավելի մեծ չափով կպահանջվի դրանց կոմպլեքսային օգտագործումը, ամեն կերպ սահմանափակելով անվերադարձ կորուստները։ Լեռնահանույթային գործում կարևոր միջոց է հողի վերամշակումը։ Հաշվի առնելով հեռավոր կանխատեսումը, ըստ երևույթին, կպահանջվի արդի ծրագրերում համաձայնվել կանխատեսվող պաշարների պահանջվող որակին, հրաժարվելով հանքավայրի առավել հարուստ մասի ջոկովի հանույթից։

Էներգետիկայի գծով արդի խնդիրը, առայժմ հիմնականում գիտության համար, էներգիայի հավիտենական աղբյուրների (արևի, քամու, մակընթացությունների, տեղատվությունների) տեխնիկական օգտագործումն է, աղբյուրներ, որոնք ի տարբերություն բոցավառվող տեսակի մնացած վառելիքի, էլեկտրաէներգիայի արտադրության ընթացքում խմելու ջուր չեն պահանջում



և ջեռուցմամբ չեն փոփոխում երկրի մթնոլորտի հաշվեկշիռը։ Դրանց այդ առանձնահատկությունները հատկապես արժեքավոր են հասարակության էներգաապահովվածության պայմանների և մասշտաբների համար։

Հարկավոր է հաշվի առնել նաև բնակչության տարիքային կառուցվածքի փոփոխումը, քաղաքային բնակչության համեմատական ավելացումը։

Կարևորը սխալներ թույլ չտալն է պարենավորման հարցում՝ հասարակության պահանջմունքները սոսկ գիտականորեն հիմնավորված նորմաներով որոշելիս։ Այդ նորմաները էականորեն զանազանվում են սննդի աղբյուրների վերաբերմամբ եղած պահանջներով, իսկ սննդարդյունաբերության մեջ զգալի են կորուստներն ու ծախսերն այլ կարիքների վրա։

Երկրագնդի և պետությունների տարբեր շրջանների համար տարբեր կերպ է դրվում բնակչության աճի պրոբլեմը։ Մասնավորապես ՍՍՀՄ-ի համար, ամբողջությամբ վերցրած, ծառացած է ծննդաբերությունը խթանելու խնդիրը՝ երեխաներին խնամելու և դաստիարակելու գործում մայրերին օգնություն ցույց տալու միջոցով։ Այդ հարցը արժանացավ ՍՄԿԿ XXIV համագումարի ուշադրությանը։

Տնտեսական երկարատև կանխատեսումների խնդիրը հանգում է բնության և հասարակության տենդենցների, օրինաչափությունների փոխադարձ կապերի, հնարավոր անհամամասնությունների բացահայտման և դրանց կանխման համար անհրաժեշտ ուղիների որոնումներին։ Այստեղից էլ առաջանում են գիտության, տեխնիկայի խնդիրները։ Ըստ էության տնտեսական-աշխարհագրական այդ խնդիրն իր բարդությամբ չի զիջում գիտական կանխատեսումների մյուս ուղղություններին։

Երկարաժամկետ կանխատեսումների կապակցությամբ շատ հարցեր են ծագում։ Այսպես, կանխատեսումների մեթոդոլոգիական հիմունքները որոշելիս պահանջվում է կիրառել այնպիսի հաշվեկշիռներ, որոնք ընդգրկում են արտադրաուժերի շատ կողմեր՝ իրենց փոխադարձ կապակցության կամ փոխադարձ կախվածության մեջ, ըստ հնարավորին հաշվի առնելով բնության մեջ խախտված բնական համամասնությունների պահպանման կամ վերականգնման պայմանները։

Ապագայի ռեսուրսների հաշվեկշռի կանխատեսման համարժեքային սահմանումը չի կարող բավարարել հետազոտողին, քանի որ դրականապես լուծելով հարցի մի կողմը, կարող է հաշվեկշռային խախտում առաջանալ բնության մյուս բնագավառում։ Դա վերաբերում է թե գետերի շրջադարձմանը, թե կլիմայի արհեստական փոփոխությանը, թե արդիականության մի շարք խոշոր պրոբլեմների։ Այդ կապակցությամբ կանխատեսումների դերն ավելի է մեծանում և, ըստ երևույթին, այդ պրոբլեմների առթիվ վերջին խոսքը կմնա էկոլոգներին։



*Ս. Ս. ԱՄԻՐՅԱՆ*

# ՀԱՂԹԱՀԱՐՎՈՒՄ ԵՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Կուսակցության XXIV համագումարը նշեց, որ անցած կարճ ժամանակամիջոցում որոշ բնագավառներում կատարվել է բանվորների և գյուղացիների զգալի մերձեցում, կարևոր քայլ է արվել սոցիալական այնպիսի արմատական խնդիրների լուծման գործում, ինչպիսիք են՝ քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարումը։*

*Զարգացման արդի փուլում հասարակության անդամների միջև դեռևս պահպանվող սոցիալ-դասակարգային տարբերությունների հաղթահարումը կոմունիստական շինարարության անհետաձգելի խնդիրներից է, որի լուծումը նշանավորում է մեր երկրում դասակարգերի վերացման վերջին էտապը։*

* * *

Սոցիալիզմը լիովին չվերացրեց դասակարգերը։ Բանվորները և գյուղացիները շարունակեցին իրարից տարբերվել սոցիալիստական արտադրահարաբերությունների սիստեմում իրենց յուրահատուկ դրությամբ, հասարակական բարիքների ստացման և բաշխման եղանակով, աշխատանքային ու կենցաղային պայմաններով, կուլտուր-գիտակցական մակարդակով և այլն։ Այդ տարբերությունների մեծ մասն իրենց էությամբ դասակարգային բնույթ ունեն, որովհետև դրանց հիմքը ամբողջ հասարակության արտադրամիջոցների նկատմամբ բանվորների և գյուղացիների ոչ միատեսակ հարաբերությունն է, սոցիալիստական սեփականության երկու ձևերի գոյությունը։

Ինչպես նշել է Լենինը, դասակարգերի լիակատար ոչնչացման համար պետք է ոչ միայն լիկվիդացնել շահագործող դասակարգերը, վերացնել հասարակության մեջ սոցիալական անտագոնիզմ ծնող հիմքերը, քաղաքի և գյուղի հակադրությունը (այդ արել է սոցիալիզմը), այլև պետք է վերացնել բանվորների և գյուղացիների, մարդկանց մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունները։

Երբեմն դասակարգային տարբերությունների հաղթահարման պրոբլեմը շփոթում են սոցիալական շարժունության հետ, որի ընթացքում փոխվում է անհատների դրությունը և նրանք մի զբաղմունքից անցնում են մյուսին։



Դասակարգային տարբերությունների վերացման ուղին գյուղացու բանվոր դառնալը չէ, թեև ինքնին այդպիսի պրոցես կա, այլ սեփական հիմքի վրա արագ զարգացման շնորհիվ աշխատավորների երկու խմբերին բաժանող սահմանագծերի վերացումը, նրանց մերձեցումն ու հետագա միաձուլումը։

Սովորաբար բանվորների և գյուղացիների սոցիալ-դասակարգային տարբերությունները նույնացվում են քաղաքի ու գյուղի տարբերությունների հետ։ Թեև այդ տարբերություններն ունեն ընդհանուր շատ կողմեր, բայց և այնպես որոշակի զատվում են։ «Քաղաքի ու գյուղի տարբերություններ» հասկացությունն ավելի մեծ է։ Տվյալ դեպքում ենթադրվում է, ընդհանրապես, տարբերությունները քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման. մակարդակների միջև, տարբերությունները մի կողմից քաղաքային բանվորների, ինտելիգենցիայի և, մյուս կողմից, գյուղական բանվորների, ինտելիգենցիայի ու գյուղացիության միջև։

Ինչ վերաբերում է այդ երկու կարգի տարբերությունների վերացմանը, ապա պետք է նշել, որ այն ընթանում է միասնական պատմական պրոցեսով, որի ընդհանուր հիմքը արտադրաուժերի բուռն զարգացումն է, գյուղի ընդհանուր կուլտուրան ու կենցաղը քաղաքային մակարդակին հասցնելը։

Աշխատավորների սոցիալ-դասակարգային տարբերությունների հաղթահարումը չի ընթանում տարերայնորեն, այն ծրագրվում ու ղեկավարվում է կոմունիստական կուսակցության կողմից։ ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց. «Կուսակցության քաղաքականության նպատակն է նպաստել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության մերձեցմանը, քաղաքի ու գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը։ Դա անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման գլխավոր տեղամասերից մեկն է»։

* * *

Բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերությունների հաղթահարման պատմական պրոցեսի առանցքը — սոցիալիստական արտադրահարաբերությունների սիստեմում նրանց դրության մերձեցումն ու հավասարեցումն է։ Իսկ դա հիմնականում տեղի է ունենում սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման և նրանց հետագա միաձուլման ճանապարհով։

Սոցիալիստական սեփականության ձևերի կատարելագործման, բանվորների ու գյուղացիների դրության մերձեցման հիմքը արտադրաուժերի զարգացումն է, հատկապես գյուղատնտեսությունը լիովին ինդուստրիալ հիմքերի վրա փոխադրելը։

Այս առումով պահանջվում է հաղթահարել կոլտնտեսային սեկտորի արտադրաուժերի զարգացման ետ մնալը համաժողովրդական սեկտորից։ Այսպես. 1967 թվականին մեկ աշխատողի հաշվով աշխատանքի ֆոնդազինվածությունը արդյունաբերության մեջ ավելի քան 3,5 անգամ, սովխոզներում մոտ 2 անգամ կոլտնտեսությունների համեմատությամբ մեծ էր։ Նույն թվականին կոլտնտեսություններում մեկ աշխատողին ընկնում էր 6,7 ձիաուժ էներգետիկ հզորություն, իսկ սովխոզներում՝ 13,8, արդյունաբերության մեջ ավելի շատ։ 1968 թվականին, արդյունաբերության համեմատությամբ, գյու-

ղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի օգտագործումը մեկ աշխատողի հաշվով պակաս էր 15 անգամ։

Տնտեսության պետական և կոլտնտեսային սեկտորներում արտադրաուժերի զարգացման մակարդակների այդ մեծ տարբերության հաղթահարման նպատակով վճռական քայլ կարվի նոր, IX հնգամյակում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թվականի հուլիսյան պլենումի և կուսակցության XXIV համագումարի որոշմամբ առաջադրվեց գյուղատնտեսության վերելքի, նրա համար ժամանակակից նյութա-տեխնիկական բազայի ստեղծման մեծ ծրագիր։ IX հնգամյակում՝ տնտեսության այդ ճյուղում նախատեսվեցին այնքան կապիտալ ներդրումներ (129 միլիարդ ռուբլու չափով), որքան նախորդ երկու հնգամյակում միասին վերցրած։ Ընդ որում, գյուղատնտեսության զարգացումը պահանջեց մեծ չափով կապիտալ ներդրումներ ավելացնել դրան սպասարկող արդյունաբերական ճյուղերում։ Դրա կարևորությունն առավել ակներև է դառնում հետևյալ համեմատությունից. ավելի բարձր տեխնիկական մակարդակի վրա գտնըվող ԱՄՆ-ի գյուղատնտեսության մեջ զբաղված է 6 միլիոն մարդ, իսկ նրան սպասարկող արդյունաբերության մեջ՝ 7 միլիոն։ ՍՍՀՄ գյուղատնտեսության մեջ աշխատող մոտ 30 միլիոն մարդու դիմաց նրան սպասարկող արդյունաբերության մեջ զբաղված է 2 միլիոն մարդ («Вопросы экономики», 1970, № 8, стр. 44)։ Այդ նշանակում է, որ մեր երկրում գյուղատնտեսության պահանջները բավարարող արդյունաբերության լայն, համակողմանի և արագ զարգացումը կենսական խնդիր է, որի արագ լուծման ուղիներն ու միջոցները նշվեցին կուսակցության XXIV համագումարում։

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման պատմական պրոցեսում կոլտնտեսությունները, ամենից առաջ, կողմնորոշվում են դեպի գյուղատնտեսության համաժողովրդական պետական սեկտորը, որը գերազանցապես ներկայացնում են սովխոզները։ Գնալով կրճատվում է կոլտնտեսությունների և սովխոզների զարգացման մակարդակների տարբերությունները։ Կարևոր է նշել, որ կոլտնտեսությունների արտադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքը, այստեղ մեքենաների ու սարքերի տեսակարար կշռի բարձրացումը, վերջին տասնամյակում խիստ մերձեցել է սովխոզների հիմնական ֆոնդերի կառուցվածքին։ Պետության հետ տնտեսական կապերի ու փոխհարաբերությունների շատ հարցերում կոլտնտեսություններն ու սովխոզները դրվել են գրեթե հավասար պայմաններում։ Երկրի առաջավոր շատ կոլտնտեսություններ արտադրության մասշտաբներով, էներգազինվածությամբ և այլ գծերով չեն զիջում առաջավոր սովխոզներին։

Փաստերի վերլուծությունը ցույց է տալիս, որ սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման պրոցեսում կոլտնտեսությունները պետք է ընդօրինակեն ոչ միայն առաջավոր սովխոզների, այլև արդյունաբերական ձեռնարկությունների արտադրության և աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ ձևերն ու մեթոդները։

IX հնգամյա պլանի վերաբերյալ կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում նշվեց, որ կոլտնտեսությունների ու սովխոզների բարձր մեքենայացված խոշոր տնտեսությունն ավելի ու ավելի մեծ չափով է մոտենում ժամանակակից արդյունաբերական արտադրությանը։ Այստեղից էլ անհրաժեշտ է գյուղատնտեսության մեջ կիրառել կառավարման ժամանակակից ձևերն ու մեթոդները։



Սոցիալիստական գյուղի զարգացմանը ներկայումս բնորոշ են կոլտընտեսային սեփականության, հատկապես նրա հիմքը կազմող անբաժանելի ֆոնդերի մեծ աճը, արտադրության կենտրոնացումը, միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը և այլն։ 1940—1968 թվականներին Հայկական ՍՍՀ մեկ կոլտնտեսությունում անբաժանելի ֆոնդերը միջին հաշվով աճել են մոտ 22 անգամ, 26,1 հազար ռուբլուց հասնելով 561,6 հազարի (Сельское хозяйство Арм. ССР, 1961, стр. 26—28., «Народное хозяйство Арм. ССР в 1968 году», стр. 73)։ Այս մեծ աճը տեղի է ունեցել գլխավորապես կոլտնտեսային սեփականության զարգացմամբ, մասամբ նաև նրա խոշորացմամբ։

Կոոպերատիվ սեփականության զարգացման բարձր էտապ է նշանավորում միջկոլտնտեսային սեփականությունը, որն զգալիորեն հաղթահարում է նրա խմբային բնույթը և մոտեցնում համաժողովրդական սեփականությանը։ 1969 թվականին երկրում կար 4343 միջկոլտնտեսային միավորում, որոնք գործում էին կոլտնտեսային արտադրության ու շինարարության տարբեր բնագավառներում։

Պետության և կոլտնտեսությունների արտադրական-տնտեսական կապերի աճի հիման վրա առաջ է եկել պետական-կոլտնտեսային խառը սեփականություն, որը մեր օրերում զարգացման լայն հնարավորություններ է ըստացել։ 1969 թվականին երկրում արդեն գործում էին 657 պետական-կոլտընտեսային միավորումներ։ Տեղի է ունենում սոցիալիստական սեփականության երկու ձևերի ներթափանցում, որն արդի էտապում նրանց մերձեցման ու հետագա միաձուլման ուղիներից է։

Կոլտնտեսային սեփականության նոր գծերը, արդի էտապում նրա հանրայնացման մակարդակի բարձրացման և համաժողովրդական սեփականության հետ մերձեցման ուղիները օրինականացվեցին կոլտնտեսության նոր կանոնադրության մեջ, որտեղ ասված է. «Կոլտնտեսային հանրային սեփականություն են հանդիսանում նաև միջկոլտնտեսային և պետական կոլտնտեսային կազմակերպությունների ու ձեռնարկությունների ունեցվածքը և միջոցները՝ նրա բաժնային մասնակցությանը համապատասխան»։

Ընդհանրացնելով սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման պրակտիկան, կուսակցության XXIV համագումարը նշեց, որ էական սոցիալական արդյունքներ է տալիս միջկոլտնտեսային և պետական-կոլտընտեսային արտադրական միավորումների ու ձեռնարկությունների ստեղծումը։ Համագումարը սրեց ուշադրությունը այդ միավորումների զարգացման վրա, նշեց կոլտնտեսային արտադրության հետագա կենտրոնացման անհրաժեշտությունը։ Նոր հնգամյակում արդյունաբերական հիմքի վրա կոլտնտեսային ու միջկոլտնտեսային խոշոր կոմպլեքսների ստեղծումն այդ բնագավառում նշանակալից առաջընթաց քայլ կլինի։ Գյուղատնտեսությունը ինդուստրիալ հիմքերի վրա փոխադրելու նպատակով կուսակցության XXIV համագումարի առաջադրած մեծ ծրագրի կենսագործումը արագացնում է արտադրաուժերի բուռն զարգացման հիմքի վրա սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցումը, նպաստում բանվորների ու գյուղացիների տարբերությունների վերացմանը, աշխատանքի բնույթի ու պայմանների, նյութական բարիքների ստացման եղանակների ու չափերի ասպարեզում նրանց մերձեցմանը։

Աստիճանաբար փոխվում է գյուղատնտեսական աշխատանքի բնույթը

և այն դառնում է ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը։ Դա համակողմանի պրոցես է, որն ընդգրկում է գյուղատնտեսական արտադրության և գյուղացու կյանքի ամենատարբեր կողմերը՝ աշխատանքի բնույթը, կազմակերպումը, արտադրողականությունը, նրա վարձատրությունը, կառավարման ձևերը և գյուղացիության կուլտուր-տեխնիկական մակարդակը, նրա կենցաղային պայմանների բարելավումը և այլն։ Ինչպես նշեց համագումարը, այդ պրոցեսում աստիճանաբար փոխվում է գյուղացու սոցիալական դեմքն ու հոգեբանությունը, որի խառնվածքը համանման է դառնում բանվորի հոգեկան կերպարին։ Մասնավորապես այն կոլտնտեսականների, որոնց աշխատանքն անմիջականորեն կապված է մեքենաների ու մեխանիզմների հետ։

Գյուղատնտեսական աշխատանքն ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածելու հիմքը գյուղատնտեսության արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն է, որը բուսաբուծության բնագավառում լայն ծավալ է ստացել։

Կոմպլեքսային մեքենայացումը մուտք է գործել նաև անասնապահության մեջ։ Երկրի հարյուրավոր կոլտնտեսությունների ֆերմաներում աշխատանքները լրիվ մեքենայացված են, որի շնորհիվ սահմանվել է երկհերթ աշխատանք։ Այդ տնտեսություններում վերացել է անասնապահ գյուղացու լուսաբացից լուսաբաց տևող ֆիզիկական ծանր աշխատանքը։ Նա դարձել է մեքենաները գործարկող, նրանց աշխատանքը հսկող, ինչպես արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները։

Գյուղում աշխատանքի բնույթի փոփոխությունը պայմաններ է ստեղծում վարձատրության եղանակի ու չափերի, բանվորների ու գյուղացիների միջև դեռևս պահպանվող տարբերության հաղթահարման համար։ Այդ առումով, խոշոր քայլ էր կոլտնտեսություններում ամենամսյա երաշխավորված վարձատրության սահմանումը, որը ելնում է սովխոզների բանվորների համապատասխան կատեգորիաների տարիֆային դրույքներից։

Արդյունաբերական բանվորների եկամուտներն ամբողջովին ստացվում են հանրային արտադրության մեջ նրանց կատարած աշխատանքից։ Մինչդեռ, կոլտնտեսականի եկամուտների մեջ զգալի տեղ է գրավում անձնական օժանդակ տնտեսության բաժինը, ուր նա կորցնում է իր արտաաշխատանքային ժամանակի մեծ մասը։

Ռեալ եկամուտների ստացման աղբյուրների ու պայմանների առումով բանվորների ու գյուղացիների տարբերությունը զգալի չափով կրճատվեց VIII հնգամյակում, երբ հանրային տնտեսությունից կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտներն աճեցին 42, իսկ բանվորների աշխատավարձը նույն ժամանակամիջոցում աճեց 26 տոկոսով։ Այդ միտումը շարունակվում, ավելի խորացվում է IX հնգամյակում։

Բանվորների և գյուղացիների կենսամակարդակների մերձեցման ուղիներից է սպառման հասարակական ֆոնդերից օգտվելու հարցում նրանց միջև եղած տարբերության հաղթահարումը, որը 60-ական թվականների կեսերին դեռևս խիստ զգալի էր։ 1965 թվականին բանվորի ընտանիքի ամեն մի անդամին սպառման հասարակական ֆոնդերից հասել է մոտ 208 ռ., իսկ կոլտնտեսականի՝ 95 ռուբլի։ Այդ տարբերությունը կոնկրետ դրսևորվում էր սպառման հասարակական ֆոնդերի օգտագործման տարբեր բնագավառներում



(կրթության, առողջապահության, բնակչության հանգստի, սոցիալական ապահովության, կուլտուր-կենցաղային սպասարկման և այլն)։

Սովետական սահմանադրությամբ երկրի բոլոր քաղաքացիները ունեն աշխատանքի, հանգստի, ծերության, հիվանդության, աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովվածության իրավունք։ Բայց քանի որ բանվորներն ու գյուղացիները անմիջապես կապված են սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի հետ, տարբերություններ կան նրանց այդ իրավունքների իրականացման պրակտիկայում։

60-ական թվականների կեսերից սկսած գործնական քայլեր են կատարվել նշված տարբերությունների հաղթահարման համար։ Այդ տեսակետից չափազանց կարևոր էր 1964—1965 թվականներին կոլտնտեսային գյուղացիության սոցիալական ապահովության պրոբլեմի միասնական լուծումն ամբողջ երկրի մասշտաբով։ Միանգամից հնարավոր չեղավ վերացնել տվյալ բնագավառում բանվորների և գյուղացիների տարբերությունը։ VIII հնգամյակում զգալի չափով բարելավվեց գյուղացիության սոցիալական ապահովության սիստեմը։ Շատ հարցերում բանվորներն ու կոլտնտեսականները դրվեցին միևնույն պայմանների մեջ։ Իսկ նոր, IX հնգամյակի առաջին տարում բարձրացվեցին կոլտնտեսականների կենսաթոշակների նվազագույն չափերը, և, որ կարևոր է, նրանց վրա տարածվեց կենսաթոշակների հաշվարկման այն կարգը, որը սահմանված է բանվորների ու ծառայողների համար։

Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարի որոշմամբ, 1970 թվականի հունվարի մեկից գործարկվեց գյուղացիության սոցիալական ապահովագրության միասնական սիստեմ։ Կենտրոնացված ֆոնդի հաշվին կոլտնտեսականները ստանում են ժամանակավոր անաշխատունակության նպաստներ, սանատորիաների ու հանգստյան տների ուղեգրեր։ Ի տարբերություն հնի, կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրությունում հատուկ բաժին հատկացվեց կոլտնտեսականների սոցիալական ապահովությանը, որտեղ օրենսդրականորեն ամրապնդվեցին գյուղացիների իրավունքները՝ նրանց համար կենսական կարևոր այդ բնագավառում։

Զարգացած սոցիալիստական հասարակարգում բանվորների ու գյուղացիների միջև պահպանվում են որոշակի տարբերություններ նաև կուլտուրայում և կենցաղում։ Դրանք պայմանավորված են ոչ այնքան սոցիալիստական սեփականության երկու ձևերի առկայությամբ, որքան այն բանով, որ բանվոր դասակարգը հիմնականում ապրում է քաղաքում, կամ քաղաքատիպ ավաններում, ուր կուլտուր-կրթական մակարդակն անհամեմատ բարձր է։

Ուրեմն, կուլտուրայի ու կենցաղի բնագավառում աշխատավոր դասակարգերի մերձեցման խնդիրը հանգում է այդ գծով քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերությունների հաղթահարմանը։ 1970 թվականին անցկացված մարդահամարը ցույց տվեց, որ միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեն քաղաքի աշխատավորների 75 տոկոսը և գյուղի՝ ավելի քան 50 տոկոսը։

Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը. «Դա մեր հասարակության մեծագույն հաղթանակն էր»։ Նոր հնգամյակում ավարտվելու է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության, որը մեծապես կնպաստի բանվորների և գյուղացիների մտավոր մակարդակների հավասարեցմանը։ Սակայն ուսման որակի հարցում քաղաքի և գյուղի դպրոցների միջև եղած տարբերությունն զգալի է։ Այդ է վկայում այն դժվարությունը, որը կանգնում է գյուղական երի-

տասարդության առջև բարձրագույն կրթություն ստանալու նրա ձգտումների իրականացման ճանապարհին։ 1967—1968 ուստարում Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի ընդունելության քննություններին գյուղական դպրոցներն ավարտած 1242 աբիտուրիենտից անբավարար գնահատական ստացան 1005-ը կամ 81 տոկոսը։ Գյուղական դպրոցներում ուսման որակի համեմատաբար ցածր լինելը, նրանց շրջանավարտներին կոնկուրսային քննությունների ժամանակ անհավասար դրության մեջ է դնում քաղաքային դպրոցների շրջանավարտների հետ։

Սոցիալիզմը կրթության հավասար իրավունք ապահովեց հասարակական բոլոր խմբերի համար։ Բայց նրանք այդ իրավունքից օգտվելիս հավասար պայմաններում չեն։ Կոմունիստական շինարարության պրակտիկան պահանջեց բուհերի ընդունելությունը կազմակերպելիս անպայման հաշվի առնել այդ կարևոր հանգամանքը, որն արտացոլվեց գյուղական երիտասարդությանը որոշ արտոնություններ վերապահող՝ կուսակցության ու կառավարության որոշումներում։ Բայց հարցի արմատական լուծման ուղին գյուղական դպրոցներում ուսման որակի բարձրացումն է, այն քաղաքային դպրոցների մակարդակին հասցնելը։

Գյուղացիության կուլտուրական մակարդակի բարձրացման գործում խոշոր դեր են խաղում նաև կուլտուր-լուսավորական հիմնարկությունները՝ ակումբը, կուլտուրայի տունը, գրադարանը, կինոն, թատրոնը, ռադիոն, հեռուստատեսությունը, որոնք մեծ գործունեություն են ծավալում։

Վերջին տասնամյակում գյուղի կուլտուրական կյանքի զարգացման մի շարք նոր կողմերը նրան ավելի են մոտեցրել քաղաքի մակարդակին։ Դրանցից են հեռուստատեսությունն ու երաժշտական կրթությունը։ Երևանից ու Մոսկվայից տրվող հեռուստատեսային հաղորդումները դիտում են հանրապետության բոլոր գյուղական շրջաններում։ Մեծ առաջընթաց է նկատվում գյուղական բնակչության կինոսպասարկման գործում, որը զգալի չափով կրճատել է այդ բնագավառում քաղաքի ու գյուղի տարբերությունը։ Այսպես. եթե 1960 թվականին ամբողջ երկրի մասշտաբով քաղաքում մեկ բնակիչը միջին հաշվով կինոսեանսներ է հաճախել 21 անգամ, իսկ գյուղականը՝ 12, ապա 1968 թվականին քաղաքային բնակիչը հաճախել է դարձյալ 21 անգամ, իսկ գյուղականը՝ 17։ Ի դեպ այս հարցում Հայկական ՍՍՀ ցուցանիշները շատ ցածր են միութենականից։

Գյուղական բնակչության կենցաղի վերափոխման հիմնական ուղիներից մեկը գյուղում ծավալվող բնակարանային մեծ շինարարությունն է և դրա հետ կապված գյուղերի վերակառուցումը, քաղաքատիպ բնակավայրերի ստեղծումը։ 1961—1968 թվականներին Հայկական ՍՍՀ գյուղերում կառուցվել է երկու միլիոն 48 հազար քառ. մետր ընդհանուր օգտակար տարածությամբ բնակելի տուն, այսինքն՝ այնքան, որքան առաջին հինգ հնգամյակներում միասին վերցրած։

Մեր երկրում գյուղերի վերակառուցումը հասարակության զարգացման խոշոր երևույթներից է։ Երկրում արդեն տասնյակ հարյուրավոր գյուղեր վերակառուցվել են գլխավոր հատակագծերի հիման վրա և վերածվել քաղաքատիպ ավանների։ Այդպիսի գյուղեր կան նաև մեր հանրապետությունում։

Գյուղական բնակչության կենցաղի վերափոխման նվաճումներից է գյուղերի գազիֆիկացումը, հեռախոսային լայն ցանցը, կենցաղային տեխնիկայի



լայնորեն օգտագործումը, բարեկարգ ճանապարհները, ավտոբուսային կանոնավոր երթևեկությունը և այլն։

Քաղաքի ու գյուղի կուլտուր-կենցաղային տարբերության վերացման գործում մեծ դեր է խաղում գյուղական բնակչության կենցաղային սպասարկումը, որը մինչև վերջին ժամանակներս խիստ ետ էր մնում քաղաքից։ Բավական է նշել, որ 1964 թվականին հանրապետության 1028 գյուղերից 454—ում դեռևս չէր ստեղծվել կենցաղային սպասարկման և ոչ մի օբյեկտ, իսկ տասնյակ գյուղերում գոյություն ունեին փոքրիկ արհեստանոցներ՝ շատ սահմանափակ ծառայություններով։ 60-ական թվականներից սկսվեց գյուղական բնակչության կենցաղային սպասարկման բարելավման գործը։ Դա բացատրվում էր կոմունիստական շինարարության խնդիրներով, ինչպես նաև այն կարևոր հանգամանքով, որ գյուղացիությունն արդեն օգտագործում էր կենցաղային բազմազան տեխնիկա և ձգտում ապրել գեղեցիկ ու կուլտուրական կյանքով։ IX հնգամյակում նախատեսվում է քաղաքներում կենցաղային ծառայությունների ծավալը մեծացնել 2, իսկ գյուղերում՝ 3 անգամ։

Գյուղի և քաղաքի էական տարբերությունների հաղթահարմանը վերջին տասնամյակում մեծ չափով նպաստեց հանրապետության գյուղական շրջաններում արդյունաբերության ստեղծումն ու զարգացումը։ Եթե մոտ անցյալում Սովետական Հայաստանում արդյունաբերությունը ներկայացվում էր 10 քաղաքներում, ապա 1970 թվականին արդյունաբերական օբյեկտներ կային 130 բնակավայրում։ Արդյունաբերության այդպիսի տեղաբաշխումը որոշ չափով կարգավորեց միգրացիան հանրապետության ներսում, կրճատեց գյուղացիության արտահոսքը խոշոր քաղաքները, կասեցրեց նրանցում բնակչության չափից ավելի կենտրոնացումը։ Արդյունաբերության տեղաբաշխումը վերացրեց գյուղական շրջանների որոշ կտրվածությունը, ուժեղացրեց տրանսպորտային կապը, զարգացրեց բնակչության սպասարկման ոլորտը, որը, իր հերթին, նպաստեց գյուղացիության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը։

Գյուղում սոցիալական պրոցեսների արագացմանը նպաստող գործոն է նաև կոլտնտեսությունների օժանդակ ձեռնարկությունների և արտադրությունների ստեղծումը։ 1971 թվականին երկրում հաշվվում էին ավելի քան 170 հազար արդյունաբերական կետեր, որոնք գործում էին գյուղական տնտեսություններին կից և տալիս էին բազմապիսի արտադրանք։ Կոլտնտեսությունների օժանդակ արդյունաբերական արտադրությունն իր հերթին նպաստում է աշխատանքային զբաղվածության, եկամուտների, կուլտուր-տեխնիկական ու պրոֆեսիոնալ մակարդակների գծով բանվորների և գյուղացիների տարբերությունների հաղթահարմանը։

Այսպիսով, մի քանի տասնամյակում կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության շնորհիվ, բանվոր դասակարգի համակողմանի օգնությամբ, գյուղը թռիչք գործեց խավարից ու հետամնացությունից և մտավ լուսավոր ու կուլտուրական կյանքի լայնահուն ուղին, իր զարգացման բոլոր կողմերով ընդհուպ մոտեցավ քաղաքին և գտնվում է նրան հավասարվելու էտապում։ Այդ հիման վրա հաղթահարվում են բանվորների և գյուղացիների դասակարգային տարբերությունները։



Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

Հ. Վ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ

*ՀԱՄԽ-ի նախագահ*

Լրացավ Հայաստանի արհեստակցական միությունների 50-տարին: Հանրապետության կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և ողջ աշխատավորները մեծ հանդիսավորությամբ նշեցին այդ փառապանծ տարելիցը:

Հոբելյանը տոնվեց քաղաքական և աշխատանքային մեծ վերելքի պայմաններում, այնպիսի ժամանակաշրջանում, երբ յուրաքանչյուր մարդ լի է կոմունիստական կուսակցության XXIV համագումարի որոշումները կենսագործելու հաստատ վճռականությամբ:

Անցած հինգ տասնամյակներում բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության հերոսական աշխատանքի շնորհիվ Հայաստանը դարձել է առաջավոր արդյունաբերության, գյուղատնտեսության, զարգացած գիտության և կուլտուրայի հանրապետություն: Սովետական Հայաստանի պետական դրոշն այժմ զարդարում են Լենինի երկու և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանները: Այդ նվաճումներում իրենց բաժինն ունեն նաև հանրապետության արհմիությունները:

Հայաստանի արհեստակցական միությունների կազմակերպման և զարգացման պատմությունն անխզելիորեն կապված է կոմունիստական կուսակցության պատմության հետ և բառիս բուն իմաստով բնութագրվում է նրա հերոսական պայքարի իրադարձություններով:

Հայաստանի արհմիությունները նշանակալից պատմական անցյալ ունեն: Սակայն այս հոդվածում մենք մտադիր չենք անդրադառնալ դրանց հեղափոխական և առաջադիմական գործունեությանը նախասովետական Հայաստանում: Անհերքելի իրողություն է, որ արհեստակցական միությունները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ակտիվորեն պայքարել են Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար: Այդ ժամանակաշրջանում Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները եռանդուն գործունեություն ծավալեցին աշխատավորների լայն զանգվածներին իրենց կողմը գրավելու համար: Էական նշանակություն ունեցավ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների 1920 թ. հունվարյան կոնֆերանսը, որը որոշեց արհմիությունները դարձնել պրոլետարիատի մարտական կազմակերպություններից մեկը:



Հայաստանի արհմիութենական շարժումը պատմական տարբեր ժամանակաշրջաններում ունեցել է վերելքի ու վայրէջքի տարիներ, սակայն այն միշտ պահպանել է մարտական ոգին և կատարել կուսակցության օգնականի իր պատմական դերը:

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի վրա ծածանվեց սովետական դրոշը, և հայ ժողովրդի տարեգրության մեջ բացվեց նոր էջ:

Ժողովրդական տնտեսության վերականգնման, երկրի սոցիալիստական զարգացման խնդիրները պահանջում էին արմատապես վերակառուցել արհմիությունների գործունեությունը: Այդ ժամանակաշրջանում Հայաստանի արհմիությունների շարքերում կար ընդամենը 16 հազար անդամ: Ձեռնարկություններում փաբրիկա-գործարանային կոմիտեների, արտադրական խորհրդակցությունների ստեղծումը արմատապես փոխեց արհմիությունների աշխատանքի բովանդակությունը և նոր եռանդ ներշնչեց նրանց արտադրական գործունեությանը:

Տնտեսական նոր խնդիրները, հանրապետության էկոնոմիկայի վերականգնման ու վերակառուցման շահերը, խորապես թելադրում էին կազմակերպչորեն ամրապնդել արհմիությունները, համախմբել նրանց ուժերը և ստեղծել արհմիութենական շարժման միասնական կենտրոն: Այդ ժամանակաշրջանում Հայաստանի գավառներում ստեղծվեցին արհմիութենական բյուրոներ:

Հայաստանի արհմիությունների պատմության կարևոր ուղենիշը դարձավ նրա առաջին համագումարը, որը տեղի ունեցավ 1921 թվի օգոստոսին: Այն խոշոր նշանակություն ունեցավ հանրապետության արհմիությունների գործունեության, նրա հետագա ամրապնդման համար: Համագումարը սահմանեց արհմիութենական կազմակերպությունների խնդիրները նոր պայմաններին համապատասխան, պարտավորեցրեց արհմիություններին իրենց ողջ գործունեությունն ի սպաս դնել հանրապետության սոցիալիստական զարգացման, աշխատավոր մարդկանց դաստիարակության և նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը:

Համագումարից հետո Հայաստանի գավառներում, Ռուսաստանի արհմիությունների օրինակով, արտադրական սկզբունքով ստեղծվեցին արհմիություններ, որոնք էապես նպաստեցին դրանց ամրապնդմանն ու հզորացմանը:

Արդյունքը եղավ այն, որ կարճ ժամանակամիջոցում ստեղծվեցին Հողանտառի, խորհրդային հիմնարկությունների լուսավորության ցանցի աշխատողների արհմիություններ: Ութ նոր արհմիություններ ստեղծվեցին Ալեքսանդրապոլում: Ալավերդում և Ղափանի արդյունաբերական ձեռնարկություններում, առաջին անգամ, ստեղծվեցին փաբրիկա-գործարանային կոմիտեներ: Արհմիությունների գործունեությունը մշտապես գտնվել է Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի ուշադրության կենտրոնում: Իրենց գործունեության ընթացքում նրանք զգացել և զգում են կուսակցության ամենօրյա հոգատարությունն ու օգնությունը:

Հայաստանի արհեստակցական միություններն ակտիվորեն մասնակցեցին հանրապետության ժողովրդական տնտեսության սոցիալիստական զարգացման ընթացքին, համառորեն պայքարեցին հանրապետության ինդուս-

տրացման և գյուղատնտեսության վերակառուցման համար։ Ամենուր ծավալվեց սոցիալիստական մրցությունը, պայքար կազմակերպվեց ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի կատարման, աշխատանքի կարգապահության ամրապնդման, արտադրողականության բարձրացման, ինչպես նաև աշխատավորների նյութական, կուլտուրական մակարդակի բարելավման համար։

Հանրապետության ժողովրդական տնտեսության անը նպաստեց արհեստակցական միությունների հետագա զարգացմանը։ Հանրապետության քաղաքներում ստեղծվեցին էներգետիկայի, էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, սարքաշինական, քիմիական, մեքենաշինության, տեքստիլ, թեթև, սննդի արդյունաբերության նոր ձեռնարկություններ և նյուղային արհմիություններ, որոնք մեծ ջանքեր ներդրեցին պետության առաջադրանքների կատարման գործում։ Թե՛ հնգամյակների տարիներին և թե Հայրենական մեծ պատերազմի ժամանակահատվածում, ինչպես և հետպատերազմյան ժամանակաշրջանում, արհմիությունները բարձր պատասխանատվությամբ կատարեցին ու կատարում են իրենց պատվավոր առաջադրանքները։

Հանրապետության բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը և ինտելիգենցիան ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյակի տարիներին հերոսական աշխատանք կատարեցին մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության առավել ամրապնդման և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում, որը և բարձր գնահատականի արժանացավ ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի շատ հիմնարկ-ձեռնարկություններ, բանվոր-ծառայողներ, գիտության և արվեստի բնագավառի աշխատողներ արժանացան կառավարական բարձր պարգևի։ Այդ նվաճումներում համեստ բաժին ունեն նաև հանրապետության արհմիությունները, որոնք իրենց գործունեության կեսդարյա ժամանակաշրջանում կազմակերպչորեն ամրապնդվել, վերածվել են մի ուժի, որը հաջողությամբ լուծում է տնտեսական և հասարակական կյանքի բազմաթիվ հարցեր։ Ներկայումս 20 ճյուղային արհմիությունների 7672 սկզբնական կազմակերպություններ միավորում են ավելի քան 900 հազար մարդ։ Դա նշանակում է, որ հանրապետության բանվոր-ծառայողների և ուսանողության մոտ 90 տոկոսը արհմիության անդամ են։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության իններորդ հնգամյակի դիրեկտիվները մեծ հեռանկարներ են բացում Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար։ Ինչպես հայտնի է, արդյունաբերական արտադրանքի ծավալը կաճի 60—63 տոկոսով, զգալիորեն կզարգանա սպառման առարկաների արտադրությունը։ Այս գործում մեծ է արհմիութենական կազմակերպությունների խնդիրները։ Ներկայումս հանրապետության արհմիութենական կազմակերպությունները զգալիորեն ակտիվացրել են իրենց գործունեությունը, նրանք ավելի մոտիկից են զբաղվում արտադրության հարցերով, առավել արդյունավետ են ներազդում ձեռնարկությունների արտադրական և հասարակական կյանքի բոլոր բնագավառների վրա, հաջողությամբ են լուծում մարդկանց աշխատանքային, կենցաղային և կոմունիստական դաստիարակությանը վերաբերող հարցերը։ Չկա ժողովրդական տնտեսության բանվոր-ծառայողների աշխատանքին և կենցաղին վերաբերող որևէ հարց, որտեղ արհմիությունները ակտիվ մասնակցություն չցուցաբերեն։



Հայտնի է, որ ՍՄԿԿ XXIV համագումարը բարձր գնահատական տալով արհմիությունների աշխատանքին, միաժամանակ նոր խնդիրներ դրեց նրանց առջև։

Հայաստանի արհմիությունները որոշակի գործունեություն են ծավալում աշխատավորությանը արտադրության կառավարմանը լայնորեն ներգրավելու նպատակով։ Առաջնահերթ նշանակություն ունեն պլանավորման, կառավարման կատարելագործման և տնտեսական խթանման ուժեղացման հարցերը։

Արտադրության կառավարմանն աշխատավորների մասսայական մասնակցության կարևոր ձևերից մեկը սոցիալիստական մրցությունն է։ Հանրապետության արհմիություններն իրենց գործունեության մեջ մեծ տեղ են հատկացնում այդ աշխատանքին։ Սոցիալիստական մրցությունում ընդգրկված է բանվոր-ծառայողների ավելի քան 87 տոկոսը։ Իրականում սոցիալիստական մրցությունը ստացել է համաժողովրդական բնույթ, դարձել աշխատավորների ստեղծագործական ինքնագործունեության զարգացման եղանակներից մեկը։

Հանրապետության ձեռնարկություններում, կառույցներում, սովխոզներում, ամենուր աշխատավորական կոլեկտիվներն ստանձնել են սոցիալիստական նոր պարտավորություններ, որոնք նպաստում են իններորդ հնգամյակի առաջադրանքների կենսագործմանը։ Վերջերս Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի բանվոր, Սոցիալիստական աշխատանքի հերոս Ռ. Մովսիսյանը հանդես եկավ հայրենասիրական նոր նախաձեռնությամբ՝ հնգամյակը կատարել 3,5 տարում առաջարկով։ Անվանի բանվորի այս նախաձեռնությունը ջերմ արձագանք է գտել շատ ձեռնարկություններում։ Մեր խնդիրն է՝ սոցիալիստական մրցությունը կազմակերպել ՍՄԿԿ Կենտկոմի նոր որոշման համաձայն և անթերի կատարել այն ամենը, ինչ հանձնարարված է արհմիութենական կազմակերպություններին։

Հայաստանի արհմիությունների խորհուրդը, հանրապետական, քաղաքային, շրջանային կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում արտադրության տեխնիկական առաջադիմության հարցերին։ Դժվար է պատկերացնել տեխնիկական առաջադիմությունն առանց մասսայական գյուտարարության և ռացիոնալիզացիայի։ Ներկայումս հանրապետությունում հաշվվում են գյուտարարների և ռացիոնալիզատորների ընկերության 560 կազմակերպություն, որոնք միավորում են 16 հազար ռացիոնալիզատորների։ Միայն վերջին 5 տարում արտադրության մեջ ներդրվել են մոտ 70 հազար առաջարկություն, որից ստացված օգուտը կազմում է ավելի քան 100 միլիոն ռուբլի։ Միայն ութերորդ հնգամյակի տարիները բնորոշ էին գիտա-տեխնիկական մտքի բուռն զարգացմամբ։ Այդ ժամանակաշրջանում ռացիոնալիզատորների թիվն աճեց 28 տոկոսով, իսկ առաջարկությունների ներդրման շնորհիվ նյութական միջոցների տնտեսումն ավելացավ 1,5 անգամ. գիտա-տեխնիկական ընկերությունները նպաստում են գիտության և արտադրության միջև եղած կապի ամրապնդմանը, բանվորների և ծառայողների գիտական մտքի զարգացմանը։ Հանրապետության գիտա-տեխնիկական ընկերություններն իրենց շարքերում միավորում են 61 հազար բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Տնտեսական քաղաքականության իրականացման ասպարեզում առանձնահատուկ դեր են կատարում մշտական գործող արտադրական խորհրդակցությունները։ Ներկայումս հանրապետությունում գործում են 1648 համա-

գործարանային, արտադրամասային արտադրական խորհրդակցություններ. որոնց մեջ ընդգրկված են ավելի քան 63 հազար աշխատողներ: Միայն 1970 թ. նրանք ընդունել են 21 հազար առաջարկություն, որից 17 հազարը ներդրվել է արտադրության մեջ: Մշտական գործող արտադրական խորհրդակցությունների քննարկմանն են ներկայացվում այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են՝ տնտհաշվարկը, աշխատանքի գիտական կազմակերպումը, պլանավորման կատարելագործումը, արտադրաֆոնդերի արդյունավետ օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, խնայողության ռեժիմի ուժեղացումը և այլն:

Արհմիությունների գործունեության կարևոր ֆունկցիաներից մեկը աշխատավորների օրինական շահերի պաշտպանությունն է: Այդ խնդրի իրականացումը մեծ մասամբ կախված է արդյունաբերության ոլորտում աշխատողների բարեխղճությունից և սովետական օրենքի ճիշտ կենսագործումից: Դեռևս մեծ չափերի է հասնում արտաժամյա աշխատանքը. արհմիութենական առանձին կազմակերպություններ չխորանալով հարցի էության մեջ համաձայնում են արտաժամյա աշխատանքին, որը վնասում է աշխատավորների առողջությանը: Ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում խիստ անբավարար են իրացվում աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի կիրառման համար նախատեսված գումարները: Արտադրական ձեռնարկություններում պատշաճ գործունեություն չեն ծավալում աշխատանքի պաշտպանության շատ հանձնաժողովներ ու հասարակական տեսուչներ: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ արտադրական տրավմատիզմի, պրոֆեսիոնալ հիվանդությունների պատճառները մեծ մասամբ սարքավորումների և տեխնոլոգիայի լուրջ թերություններն են: Քիչ չեն դեպքերը, երբ արտադրական հիմնարկությունները շահագործման են հանձնվում առանց աշխատանքի պաշտպանության և տեխնիկայի անվտանգության ապահովման: Չնայած վերջին տարիներին զգալիորեն բարելավվել են աշխատանքային պայմանները, սակայն վիճակը բավարար համարել չի կարելի: Ամեն տարի աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի համար արդյունաբերական ձեռնարկությունների կողմից ծախսվում է ավելի քան 11 միլիոն ռուբլի:

Բանվոր-ծառայողների կուլտուրական սպասարկումը, նրանց հանգստի ու բուժման օրինակելի կազմակերպումը միշտ եղել է արհմիությունների գլխավոր հոգսերից մեկը: Այդ նպատակով անցած տարիներին արհմիությունները կառուցել են 6 առողջարաններ, 7 հանգստյան տներ, որոնցում յուրաքանչյուր տարի բուժվում և հանգստանում են տասնյակ հազարավոր բանվոր-ծառայողներ: Միայն 1970 թվականին այդ բարիքներից օգտվել են 37 հազար աշխատավորներ: Տարեցտարի աճում են այդ նպատակի համար հատկացվող միջոցները. եթե 1970 թվականին աշխատավորների բուժման ու հանգստի կազմակերպմանը ծախսվել է 4712 հազար ռուբլի, ապա այս տարի այն կհասնի 5520 հազար ռուբլու: Վերջին տասնամյակում պետական սոցիալական ապահովագրության բյուջեն աճել է 160 տոկոսով: Մեր խնդիրն է՝ առավել արդյունավետ օգտագործել ունեցած հնարավորությունները աշխատավորության բուժումն ու հանգիստն օրինակելիորեն կազմակերպելու համար: Արդյունաբերական, շինարարական, տրանսպորտային ձեռնարկությունների ղեկավարները բավարար ուշադրություն չեն նվիրում պանսիո-



նատների, պրոֆիլակտորիումների, հանգստյան գոտիների, մերձքաղաքային պիոներական ճամբարների կառուցմանը, իրենց իսկ բանվոր-ծառայողների հանգստի կազմակերպմանը:

Արհմիութենական աշխատանքում մեծ տեղ է հատկացվում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը: Ինչպես հայտնի է, իններորդ հնգամյակում հանրապետությունում շահագործման է հանձնվելու 6 մլն 200 հազար քմ բնակելի տարածություն, առանձնապես կզարգանա կոոպերատիվ բնակարանային շինարարությունը: Արհմիութենական կազմակերպությունների խնդիրն է՝ խստորեն պահպանել բնակարանների հաշվառման և բաշխման կարգը, ակտիվացնել բնակարանային կենցաղային հանձնաժողովների աշխատանքը: Լուրջ անելիքներ ունենք հասարակական սննդի կազմակերպման ասպարեզում: Անհրաժեշտ է աշխատավայրում բանվոր-ծառայողներին ապահովել տաք սննդով, բարձրացնել սպասարկման կուլտուրան: Առաջնահերթ խնդիր է քաղաքային տրանսպորտի աշխատանքի կարգավորումը, որի անբավարար վիճակը լուրջ վնաս է պատճառում արտադրությանը և աշխատանքային կարգապահությանը:

Հանրապետությունում մեծ թափ է ստացել տուրիզմը: Սկսվել է Հանքավանի 3 հազար տեղանոց սանատորիայի համալիրի շինարարությունը, որի առաջին հերթը շահագործման կհանձնվի ընթացիկ հնգամյակում. կավարտվի Կիրովականում, Արզնիում, Ջերմուկում կառուցվող նոր սանատորիաների բազմահարկ շենքերի կառուցումը, կգործարկվեն Սևանի, Ծաղկաձորի, Մարտունու, Լոռու հանգստյան տների նոր մասնաշենքեր: Այս տարվա հուլիսին Նորքի գեղատեսիլ վայրում շահագործման հանձնվեց տուրիստական «Նաիրի» հյուրանոցը: Սանատորա-կուրորտային շինարարության համար ընթացիկ տարում ծախսվելու է 4 մլն ռուբլի:

Արհմիությունների բազմազան գործունեության կարևոր բնագավառներից է բանվոր-ծառայողների կոմունիստական դաստիարակությունը:

Միայն 1970 թվականին կուլտուրայի պալատներում, ակումբներում և գրադարաններում արհմիությունները կազմակերպել են մոտ 44 հազար դասախոսություն, զեկուցում և զրույց, որոնց մասնակցել են ավելի քան 3 միլիոն աշխատավորներ:

Արհմիությունները յուրաքանչյուր տարի կուլտուր-մասսայական և ֆիզկուլտ-սպորտային աշխատանքների կազմակերպման համար հատկացնում են հսկայական միջոցներ. միայն ընթացիկ տարում այդ նպատակին հատկացված է 7 մլն ռուբլի:

Արհմիությունների դաստիարակչական աշխատանքներում կարևոր դեր են կատարում կուլտուր-լուսավորական հիմնարկությունները: Ներկայումս արհմիությունների տրամադրության տակ գտնվում են 69 մշակույթի պալատ, ակումբ, 106 գրադարան, 1313 կարմիր անկյուն և 64 կինոսարքավորում, որոնք ամենօրյա քաղաքական-մասսայական և կուլտուր-դաստիարակչական աշխատանք են ծավալում բանվոր-ծառայողների շրջանում: Բազմաթիվ միջոցառումներ են անցկացվում մշակույթի օջախներում:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում մեծ է կոմունիստական աշխատանքի դպրոցների դերը: ՀԱՄԽ-ը և ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները քննարկել և միջոցներ են ձեռնարկում կոմունիստական աշխատանքի դպրոցների քանակն ավելացնելու և դրանց աշխատանքները օրինակելի կազմակերպելու համար: Հանրապետու-

թյան արդյունաբերական ձեռնարկություններում և սովխոզներում կազմակերպվել են 1019 կոմունիստական աշխատանքի դպրոցներ, շուրջ 25000 ունկնդիրներով:

Արհմիությունները լուրջ գործունեություն են ծավալում աշխատավորների գեղագիտական դաստիարակության նպատակով: Մասսայական բնույթ է ստացել բանվոր-ծառայողների և նրանց ընտանիքի անդամների մասնակցությունը գեղարվեստական ինքնագործունեությանը: ՀԱՄԽ-ին կից ստեղծվել և գործում է գեղարվեստական ինքնագործունեության տուն: Ներկայումս արդյունաբերական, գյուղատնտեսական, շինարարական ձեռնարկություններում և ուսումնական հաստատություններում գործում են գեղարվեստական ինքնագործունեության 1750 կոլեկտիվ, ժողովրդական թատրոն, որոնցում ընդգրկված են մոտ 37 հազար բանվոր-ծառայողներ:

ՍՍՀՄ 50-ամյակի կապակցությամբ ընթացիկ տարում Բելոռուսիայի մայրաքաղաք Մինսկում կազմակերպվել են Հայաստանի արհմիության օրեր: Այդ ժամանակ գեղարվեստական ինքնագործունեության մի շարք կոլեկտիվներ իրենց ելույթներով մեծ բավականություն պատճառեցին Մինսկի աշխատավորությանը:

Արհմիութենական կազմակերպությունները նշանակալից աշխատանք են կատարում երեխաների հանգստի, ուսման և դաստիարակության գործում: Եթե 1967 թ. հանրապետությունում գործում էին 53 մերձքաղաքային պիոներական ճամբարներ, որտեղ հանգստացել են 33 հազար 390 երեխաներ, ապա ընթացիկ տարում Հայաստանի գեղատեսիլ վայրերում գործեցին 71 ճամբարներ, որտեղ հանգստացան ավելի քան 52 հազար պիոներ-դպրոցականներ:

Մեր ճամբարներն են գալիս եղբայրական հանրապետությունների և ժողովրդական դեմոկրատիայի ու կապիտալիստական երկրների աշխատավորների երեխաները: Վերջին տարիներում շահագործման են հանձնվել պիոներական ճամբարների նոր շենքեր Հանքավանում, Ծաղկաձորում և Կիրովականում: Սևանի գեղատեսիլ ափին կառուցվել են 400 տեղանոց սանատորիական տիպի «Արևիկ» պիոներական ճամբարը:

Արհմիութենական կազմակերպությունները հոգատարություն են ցուցաբերում կադրերի ուսուցման և որակավորման ասպարեզում, ՀԱՄԽ-ի դասընթացներում, հանրապետական քաղաքային, շրջանային և ֆաբրիկա-գործարանային կոմիտեների սեմինար պարապմունքներում, յուրաքանչյուր տարի պարապում են ավելի քան 100 հազար մարդ: Մեր խնդիրն է՝ պատրաստել արհմիութենական աշխատողներին և մոբիլիզացնել նրանց ուժերը ՍՄԿԿ XXIV համագումարի, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի սոցիալիստական մրցության մասին որոշումը պատվով կենսագործելու համար:

Հայաստանի արհմիությունների կեսդարյա պատմությունը հարուստ է բազմաթիվ նշանավոր իրադարձություններով, որոնք ժողովրդին ծառայելու, նրանց անձնվեր աշխատանքի վկայությունն են:





Հ. Ռ. ՀԱՍԱՆՈՎ

«Սովետ Էրմանիստանի» լրագրի խմբագիր

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐՈՎ ՏՈԳՈՐՎԱԾ

Լրացավ Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և Մինիստրների սովետի օրգան «Սովետ Էրմանիստանի» թերթի 50-ամյակը: «Սովետ Էրմանիստանիի» կեսդարյա պատմությունը սոցիալիզմի կառուցման և կոմունիստական շինարարության փիթխարի առաջադրանքների կատարման ժամանակաշրջանի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության կենդանի պատմության արտացոլումն է:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, հանրապետությունում ստեղծելով ադրբեջաներեն տպագիր օրգան, ղեկավարել ու կոնկրետ օգնել է նրան, թերթի առջև դրել պատմական հանգուցային խնդիրներ և աջակցել դրանց հաջող կենսագործմանը:

Այսօր, երբ Հայաստանի աշխատավորությունը նշում է լրագրի 50-ամյակը, ավելորդ չէ հետադարձ մի հայացքով վեր հանել ու ըստ արժանվույն գնահատել կատարվածը, դրվատել ուրախալի նվաճումները ու աչքաթող չանել այն թերությունները, որոնք եղել են թերթի հիսնամյա փառավոր գործունեության մեջ, նշել այն ուղիները, որոնցով ընթանալու է թերթը մոտակա տարիներին:

1921 թվական: Տնտեսապես քայքայված երկիր, սով, ավերածություն, որոնք շարունակում էին մեծաթիվ զոհեր խլել ժողովրդից: Հակահեղափոխական տարրերը դավում էին նորաստեղծ սովետական իշխանության դեմ, խանգարում խաղաղ աշխատանքին: Նման ծանր հանգամանքներում Հայաստանի կոմկուսի Կենտկոմը լարված զբաղվում էր նաև հանրապետության այլ ազգերի կուլտուրական կարգացման, նրանց դաստիարակության կարևոր հարցերով: Եվ ահա, յոթ ամիս էր անցել սովետների հաստատվելուց, որ 1921 թվականի հուլիսի 1-ին լույս տեսավ ադրբեջաներեն «Ռանչպար» թերթի առաջին համարը: Դա Հայաստանի կոմկուսի վարած լենինյան ազգային քաղաքականության վառ արտահայտություններից էր:

Կենտկոմի քարտուղարության 1921 թվականի հուլիսի 14-ի նիստը (Ա. Լուկաշինի նախագահությամբ) հանձնարարել է ագիտբաժնին միջոցներ մշակել ամենակարճ ժամանակամիջոցում կանոնավորելու թերթի տպագրության գործը:

Թերթի հազարավոր ընթերցողներն այսօր իրենց երախտագիտության խոսքն են հղում այն մարդկանց, ովքեր մեծ ջանքեր գործադրելով կազմակերպեցին ադրբեջաներեն լրագրի հրատարակությունը:

Լրագրի առաջին համարները լույս են տեսել «Ռանչպար» խորագրով: Դա այն ժամանակաշրջանն էր, երբ չքավոր, ընչազուրկ, ռանչպար գյուղացիներին հարկավոր էր կազմակերպել, պայքարի հանել կուլակության և բեգերի դեմ, ամրապնդել բանվորագյուղացիական դաշինքը: Ռանչպարին հասնել գործնականում, որ բանվոր դասակարգի հետ միասին այսուհետև նա իր երկրի, բախտի տերն է:

Հետագայում լրագրի խնդիրները շատացան ու բարդացան, նրա հեղինակությունն աճեց ընթերցողների աչքում: «Ռանչպար»-ից հետո լույս էր տեսնում «Զանգու», «Զանգու գավառասի», «Կըզըլ շաֆագ», «Կոմունիստ» և վերջապես «Սովետ Էրմանիստանի»: Այժմ, տոնում ենք «Սովետ Էրմանիստանի» գոյության 50-ամյակը, ավելորդ չի լինի համառոտակի անդրադառնալ նրա անցած գործունեությանը:

Նախասովետական Հայաստանի ադրբեջանցիների մեծագույն մասն անգրագետ էր: Գործում էին մի քանի դպրոցներ: Հին կարգերն իրենց դրոշմն էին դրել մարդկանց ապրելակերպի, նրանց հոգևոր աշխարհի վրա: Ամենից դժվարը խավար մարդկային կանգվածներին վերափոխելն էր: Այդ դժվարին խնդրի լուծման ասպարեզում Հայաստանի կոմունիստական կուսակցության հավատարիմ օգնականն էր «Սովետ Էրմանիստանի» լրագիրը: Այն աշխատավորների առաջին դպրոցն էր, որը ուսուցում էր նոր կյանքի կառուցումը, նրանց ներգրավելով սոցիալիզմի շինարարությանը:

Եթե թերթում ենք լրագրի սկզբնական համարները, նկատում ենք երկու ուղղությամբ կատարվող նպատակասլաց աշխատանք: Այն համոզիչ եղանակներով պրոպագանդում էր նոր աշխարհի կառուցման լենինյան գաղափարները և միաժամանակ աշխատավոր մասսաներին ներգրավում սոցիալիստական շինարարության ոլորտը, հետևողականորեն խարազանում այն ամենը, ինչ խոչընդոտում էր նոր կյանքին:

Լրագրի մի համարում տպագրված է.

*Շահերին, սուլթաններին, խաներին տապալողը մենք ենք,*
*Բեգերին, մոլլաներին, հաջիներին ճնշողը մենք ենք,*
*Հին աշխարհը քանդողը, նոր կյանք կառուցողը մենք ենք,*
*Աշխարհի մեկ վեցերորդին տիրացողը մենք ենք:*

Ադրբեջանական բնակչության հետամնացության երևույթների քննադատությունը, նոր սովորույթների պրոպագանդումը 30-ական թ. լրագրի կարևոր թեմաներից մեկն է եղել: Այս առումով տպագրվել են շատ հոդվածներ, անգամ ռեպորտաժներ դատարանի դահլիճից: Հիրավի, լրագրի արժանիքները մեծ են ադրբեջանուհու վերջնական ազատագրման, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործում:

Հնգամյակների տարիներին լրագիրը պատվով է կատարել իր դերը. օգնել է կուսակցությանը սոցիալիստական հաղթարշավում գլխովին ներգրավելու ադրբեջանական բնակչությանը:

Լրագրի բազում էջերում տեսնում ենք նոր մարդու, սոցիալիզմ կառուցող սովետական մարդու կերպարը, ծանոթանում նրա աշխատանքի, պայքարի, իղձերի հետ: Այն մարդու, որի քրտնաջան աշխատանքի շնորհիվ Սովետա-



կյան Հայաստանը դարձավ ինդուստրացման, գյուղի կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության երկիր: Մենք այսօր իրավամբ հպարտանում ենք այդ ամենով:

Արտահայտելով հպարտության զգացումները, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ասաց.

*«Սովետական իշխանության տարիներին սոցիալիստական կարգերի շնորհիվ մեր ժողովուրդը ստեղծեց իր ազգային պետականությունը, շենացրեց երկիրը, հասավ ժամանակակից քաղաքակրթության բարձունքներին, ըստ ամենայնի ծավալեց իր ստեղծագործական տաղանդը: Սովետական իշխանության 50-տարիներին հայ ժողովուրդը կտրեց անցավ հարյուրամյակների ուղի, հաղթահարեց դարավոր հետամնացությունը և հաստատուն կերպով բռնեց համակողմանի զարգացման, հարաճուն վերելքի ու ստեղծագործական սխրանքների ճանապարհը»:*

Ինձ համար հաճելի է նշել, որ նման պատմական հաջողությունների ձեռքբերման գործին նպաստել է նաև «Սովետ Էրմանիստանի» լրագիրը: Հայաստանում ապրող հայ ժողովրդի հետ միասին, աշխատող և պայքարող ադրբեջանցիները:

* * *

Հայրենական մեծ պատերազմը ժամանակավորապես խանգարեց սովետական ժողովրդի ստեղծագործական աշխատանքը: Սովետական հերոս ժողովուրդն աշխատանքի գործիքը փոխարինեց զենքով, կռվի դուրս եկավ գերմանական ֆաշիզմի դեմ: 1941—45 թվականներին Մեծ հայրենականը հերոսության, հայրենասիրության դպրոց դարձավ: Այլ լրագրերի պես, «Սովետ Էրմանիստանի»-ին ևս մասսաներին նպատակամղեց օտարերկրյա զավթիչների դեմ ծավալվող կռվին: Այդ ժամանակ նրա էջերը մարմնավորում էին ռազմաճակատի հերոսական առօրյան, թիկունքի հայրենանվեր աշխատանքը, հայրենասիրական բանաստեղծությունները:

Հայրենական մեծ պատերազմի հերոսներ Ջիան Կարախանյանի, Նելսոն Ստեփանյանի, Խտր Մուստաֆաևի, Հունան Ավետիսյանի և մյուսների մասին գրված հոդվածները երիտասարդներին ոգևորում էին հերոսական պայքարի, մասսաներին դաստիարակում սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սովետական ժողովրդի եղբայրական բարեկամության ամրապնդման ոգով, նրանց համախմբում կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության շուրջը:

«Սովետ Էրմանիստանի» լրագրի էջերում հոդվածներ են տպագրվել Սովետական Միության ժողովուրդների հերոս զավակների քաջությունների մասին, մեծ ուշադրություն է հատկացվել հայ, ադրբեջանական ժողովուրդների զավակների միասնական պայքարին, խոսվել է այն մասին, որ հայրենականում Բալթիկայից Սև ծով ձգվող ռազմաճակատը կռիվ է ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների երջանկության համար:

Սովետական հերոս ժողովրդի հաղթանակով ավարտվեց Հայրենական մեծ պատերազմը: Մեր ժողովուրդը նոր եռանդով և հպարտության զգացումով ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղծագործական աշխատանքի, պատերազմի հետևանքով քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնմանը, կոմունիզմի կառուցման հոյակապ խնդիրների կենսագործմանը:

Հետպատերազմյան ժամանակաշրջանի տնտեսական ու քաղաքական խնդիրները դարձան սովետական մամուլի խնդիրները: Սովետահայ մամուլն

այս կարևոր ժամանակաշրջանում ևս պատվով կատարեց կուսակցության և կառավարության առաջադրանքները: Խաղաղ ստեղծագործական աշխատանքի տարիներին իր եղբայրների հետ միասին «Սովետ Էրմանիստանին» ևս լծվեց առաջադրված նոր խնդիրների լուծման բնագավառում կուսակցական կազմակերպություններին օգնելու գործին: Լրագրի էջերում հաճախ երևացին հետպատերազմյան ստեղծագործական աշխատանքը փառաբանող հոդվածներ:

Ստեղծագործական աշխատանքը դրվատող հարյուրավոր հոդվածներ կարելի է բերել, որոնք ցույց կտան, որ մեր հանրապետությունում աշխատավորները՝ հայերը, ադրբեջանցիները, ռուսները, քրդերը և մյուս ազգերի ներկայացուցիչները ինչպիսի հերոսական աշխատանք են կատարել: Ահա մի օրինակ: Հետպատերազմյան տարիներին նոր ուժով էր ծավալվել սոցիալիստական մրցությունը: Իրար հետ մրցում էին եղբայրական հանրապետությունները, աշխատավորները: Այս տեսակետից ուսանելի է Արծվիկ Հարությունյանի և Բահար Թալիբովայի միջև ծավալվող սոցիալիստական մրցությունը, որը կազմակերպվել էր «Սովետ Էրմանիստանի» նախաձեռնությամբ:

Արծվիկ Հարությունյանը Էջմիածնի շրջանի Շահումյան գյուղի կոլտնտեսության օղակավարուհին էր: Բահար Թալիբովան աշխատում էր Ադրբեջանական ՍՍՀ Նորաշենի շրջանի Մ. Հյուսեինզադեի անվան կոլտնտեսությունում:

Նրանց միջև մրցություն ծավալվեց, որը շարունակվեց 15 տարուց ավելի: Նրանք դարձան բարձր բերքի վարպետներ, ադրբեջանական բանաստեղծ Հուսեյին Ռափին նրանց մասին պոեմ գրեց, որը տպագրվեց «Սովետ Էրմանիստանի» և «Կոմունիստ» (Բաքու, հայերեն) լրագրերում:

Երկու եղբայր ժողովուրդների դուստրերի հայրենանվեր աշխատանքը կուսակցության և կառավարության կողմից բարձր գնահատականի արժանացավ: Արծվիկ Հարությունյանը մի քանի անգամ հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ ընտրվեց, արժանացավ Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչմանը: Բահար Թալիբովան նույնպես Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման արժանացավ, այժմ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ է:

Հայ և ադրբեջանական ժողովրդի զավակների միասնական աշխատանքին, մրցությանը, փոխադարձ օգնությանն ու աջակցությանը վերաբերող հարյուրավոր նման օրինակներ կարելի է բերել: Թերթը, օգտագործելով այդ օրինակները, օգնում է կուսակցական կազմակերպություններին համաժողովրդական սոցիալիստական մրցությունն ավելի լայն ծավալելու համար:

Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ, մեր երկրում ժողովուրդների միջև ստեղծվել է բարեկամության լայն պողոտա: Սովետական ժողովուրդն այսօր այդ պողոտայով ընթանում է դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները: Սովետական մամուլի աշխատողները հպարտանում են նրանով, որ այդ բարեկամության ու եղբայրության պողոտայի ստեղծման գործում իրենք ևս ունեն որոշակի ծառայություն:

«Սովետ Էրմանիստանի» լրագրի անցած կյանքի ընթացքում լույս տեսած 9600-ից ավելի համարներում, կարմիր թելի պես անցնում է ժողովուրդների լենինյան բարեկամության, եղբայրության, համագործակցության, փոխադարձ օգնության գաղափարը: Այն իր էջերում միշտ պատշաճ տեղ է հատկացրել մեր երկրի կարգացման գործում ռուս մեծ ժողովրդի դերին, ցույց տվել, որ հայ



և ադրբեջանական ժողովուրդների, մեր երկրում ապրող բոլոր ժողովուրդների այսօրվա երջանիկ կյանքը հնարավոր եղավ ռուս մեծ ժողովրդի օգնությամբ ու աջակցությամբ, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: Կողք-կողքի ապրող և աշխատող երկու ժողովուրդների՝ հայերի և ադրբեջանցիների, միասնական պայքարը միշտ եղել է լրագրի ուշադրության կենտրոնում: Չեք կարող գտնել թերթի մեկ համար, որտեղ հայերի և ադրբեջանցիների միամնական աշխատանքին, այսօրվա կյանքին վերաբերող որևէ նյութ տպագրված չլինի: Թերթի համարներում կարմիր թելի նման անցնում է այն միտքը, որ Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողությունները կապված են մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի անվան, Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործունեության, ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության հետ:

Սովետահայ գրող Հ. Սիրասը թերթում տպագրված բազմաթիվ հոդվածներից մեկում գրում է. «Այժմ յուրաքանչյուր պիոներին անգամ հայտնի է, որ եթե ապստարար հոկտեմբերի ալիքները ժամանակին չհասներ մեզ, մեր երկիրը չէր կարող նման խոշոր հաջողություններ ձեռք բերել:

Հենց դրա համար մենք պարտավոր ենք աչքի լույսի պես պաշտպանել մեր հեղափոխության նվաճումները, զարգացնել ու խորացնել ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունը»:

Պարզ է, նման ոգևորիչ խոսքերը մեծ նշանակություն ունեն մասսաների, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիարակության համար:

Այսօրվա երիտասարդ քաղաքացին չի տեսել և չի իմանում մինչ հեղափոխության ժամանակաշրջանի, սովետական իշխանության առաջին տարիների դժվարությունները: Նա չգիտե, որ կուլտուրական հեղափոխության իրականացման առաջին տարիներին, անգրագիտության դեմ պայքարի ժամանակաշրջանում, քիչ թե շատ կարդալ-գրել իմացող մարդիկ ուսուցիչ էին նշանակվում: Իսկ այսօր մենք չենք համաձայնվում այն մտքի հետ, երբ մեր որոշ դպրոցներում աշխատում են թերի բարձրագույն կրթություն ունեցող ուսուցիչներ:

Այժմ Սովետական Հայաստանը համատարած գրագիտության, բարձր կուլտուրայի ու գիտության երկիր է: Մեծ փոփոխություններ են կատարվել և հանրապետությունում ապրող ադրբեջանցիների կյանքում: Հայաստանի ադրբեջանական գյուղերում կա 256 հանրակրթական դպրոց, որտեղ սովորում են 47 հազարից ավելի աշակերտներ, գործում է 207 ակումբ ու գրադարան: Խ. Աբովյանի անվան Հայկական մանկավարժական ինստիտուտն ունի ադրբեջանական բաժին, գյուղատնտեսության համար միջին կադրեր է պատրաստում Երևանի ադրբեջանական գյուղատնտեսական տեխնիկումը: Ջ. Ջաբարլիի անվան ադրբեջանական դրամատիկական թատրոնը խոշոր դեր է կատարում մասսաների դաստիարակության բնագավառում:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի մասսայական դպրոցների շրջանավարտ ադրբեջանցիներից 42 հոգի, դոկտորական և 260 հոգի թեկնածուական դիսերտացիաներ պաշտպանելով, գիտական կոչում են ստացել: Նրանցից 8-ը Ադրբեջանի ԳԱ իսկական և թղթակից անդամներ են ընտրվել:

Ընդամենը 50 տարի առաջ համատարած անգրագիտություն տիրող գյուղերում այժմ տասնյակ բարձրագույն կրթության մասնագետներ են աշխա-

տում: Մեղրիի շրջանի Նյուվադի գյուղից 18 հոգի գիտության դոկտոր և թեկնածու են: Այդ գյուղի կոլտնտեսության նախագահ Ջալալ Ալիևը և գլխավոր գյուղատնտես Մաիլ Ամանովը գիտությունների թեկնածուներ են:

Երբ քայլում ենք այսօրվա Երևանի լայն պողոտաներով, շրջում Սովետական Հայաստանի գյուղերն ու քաղաքները, մտաբերում հանճարեղ հայ գրող, ադրբեջանական ժողովրդի մեծ բարեկամ Դերենիկ Դեմիրճյանի «Նիգյար» վիպակում արտացոլված դեպքերն ու իրադարձությունները, այն համեմատում այսօրվա հաջողությունների հետ, մեր աչքի առջև հառնում են այն վիթխարի վերափոխումները, որոնք կատարվել են ընդամենը 50 տարվա ընթացքում:

Սովետական իշխանության հաղթանակի 50-ամյակին նվիրված իր մի համարում «Սովետ Էրմանիստանին» իր ընթերցողներին տանում է Դ. Դեմիրճյանի հիշված հերոսուհու հետքերով, ցույց տալիս հին Գետառի ափին փռված աղքատիկ տնակները, ստվերի նման փողոցներով թաքուն շարժվող Նիգյարներին: Ապա պատմում սովետական իշխանության տարիներին նոր Նիգյարների, նրանց կարգացման ուղու, այսօրվա պայքարի ու աշխատանքի մասին:

Դերենիկ Դեմիրճյանի Նիգյարները սովետական իշխանության տարիներին, հարյուրներ, հազարներ դարձան: Դեռևս 30-ական թվականների անգրագետ, վախվխուն, իր իրավունքն անգամ չիմացող Նիգյարներին այսօր տեսնում ենք պետական, կուսակցական գործիչների, գիտնականների շարքում: Գետառի ափին ծնված, սովետական դպրոցում դաստիարակված երեք Նիգյարի հետագա ուղու մասին բերենք երկու փաստ.

Քյովսար խանում Թարվերդիևա— բնիկ Երևանցի, «Խաչատուր Աբովյանի և Միրզա Ֆաթալի Ախունդովի բարեկամությունը» թեմայով դիսերտացիա պաշտպանելով, դարձավ բանասիրական գիտությունների թեկնածու, այժմ դասախոսում է Բաքվի ադրբեջանական մանկավարժական ինստիտուտում:

Զարիֆա Ալիևա-Բուդակովա— բանասիրական գիտությունների դոկտորպրոֆեսոր, նրա գրած դասագրքով այժմ բարձրագույն ուսումնական հաստատություններում ադրբեջաներեն են սովորում:

Մամեդովա Գյուլումկար Կուրբան կըզի— ծնվել է Իջևանի շրջանի Հախկըխլու գյուղում, որտեղ մինչև հեղափոխությունը ոչ մի գրագետ մարդ չի եղել: Միջնակարգ կրթությունը տեղի դպրոցում ստանալուց հետո ավարտել է Երևանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետը: Այժմ աշխատում է Երևանի 148-րդ դպրոցում. 8—9-րդ դասարաններում հայ երեխաներին հայոց լեզու և գրականություն է ուսուցանում:

Ահա Նիգյարների փառահեղ ուղին: Թանկագին ընթերցող. համեմատիր անցյալի և ներկայի Նիգյարներին: Այդ ժամանակ քեզ համար պարզ կդառնա սովետական իշխանության տարիներին Սովետական Հայաստանի, նաև Հայաստանում բնակվող ադրբեջանցիների վիթխարի նվաճումները, կարգացման հոյակապ թռիչքը:

Ինչպես հիշվեց վերը, մինչ հեղափոխական Հայաստանում ադրբեջանական ոչ մի դպրոց չկար: Հարկավոր էր դպրոցներ բացել, վերացնել անգրագիտությունը, նոր ուսուցիչներ պատրաստել: Իսկ դպրոցներ ունենալու համար առաջին հերթին ուսուցիչներ էին պահանջվում: Այստեղ հայ ժողովրդի ադրբեջաներեն լեզուն տիրապետող զավակները օգնության հասան: Տասնյակ



հայ ուսուցիչներ սկսեցին աշխատել ադրբեջանական դպրոցներում: Ուսանելի է հետևյալ փաստը, որի մասին «Սովետ Էրմանիստանի» էջերում գրված է հետևյալը:

Սովետական Հայաստանի կառավարության որոշմամբ, Ամասիայի շըրջանում ադրբեջանցիների համար հարկավոր էր դպրոցներ բացել: Տեղական իշխանություններն անհրաժեշտ գտան առաջին դպրոցը հիմնել շրջանի Կարաչանթա (Սև պայուսակ), (այժմ Ակիւբեկով) գյուղում: 1923 թվականի հունվարի 6-ին սկսվեց առաջին պարապմունքը: Դպրոց էին եկել ընդամենը 10—12 երեխա: Ուսուցիչն էր հայ ժողովրդի զավակ Գևորգ Նալբանդյանը: Նրա ղեկավարած դպրոցը 1937 թվականին տվեց առաջին շրջանավարտները, որոնց մի մասը շրջանի տարբեր գյուղերում սկսեցին աշխատել որպես ուսուցիչներ:

Գևորգ Նալբանդյանի աշակերտ-ուսուցիչները Ամասիայի շրջանը դարձրեցին համատարած գրագիտության շրջան, իսկ նրանց սաներից շատերը դարձան գիտական աշխատողներ, բժիշկներ, ինժեներներ, ժողովրդական տնտեսության կարգացման տարբեր բնագավառների առաջամարտիկներ:

Առաջին բժիշկը, որն սկսեց աշխատել Ամասիայի շրջանում, Ալմա Ալեքսանդրովնա Քաթանյանն էր (այժմ պրոֆեսոր), որն ավարտելով Բաքվի բժշկական ինստիտուտը, եկել էր Հայաստան: Այժմ Ամասիայի շրջանում աշխատող բժիշկների մեծամասնությունը տեղի գյուղացիների զավակներն են:

Մեծ Հոկտեմբերի փառապանծ 50-ամյակի նախօրյակին թերթը կազմակերպեց Ակիւբեկով գյուղի բնակչության հետ Գևորգ Նալբանդյանի հանդիպումը, որը վերածվեց հայ և ադրբեջանական ժողովրդի բարեկամության ու եղբայրության մի վառ ցույցի:

Մեր գրականագետ-գիտնականները շատ են գրում Խ. Աբովյանի և Մ. Ֆ. Ախունդովի բարեկամության մասին: Դա պատմական փաստ է և հայտնի բոլորին: Բայց այսօր մեր իրականության մեջ կան նման բազմաթիվ, բազմահազար նշանակալից, հուզիչ օրինակներ: Թերթը, օգտագործելով այս բնույթի ժամանակակից փաստերը, նպաստում է մասսաների ինտերնացիոնալ դաստիարակությանը, ցույց տալիս, որ այժմ բարեկամությունը, եղբայրությունը վերածվել է ժողովուրդների հարաբերությունների նորմերի: Դա առանձին մարդկանց շրջանակից դուրս գալով դարձել է սովետական ժողովուրդների հզորության հուսալի աղբյուրը:

Թերթի առջև դրված կարևոր գործի, մասսաների կոմունիստական դաստիարակության խնդրի հաջող լուծման բնագավառում խոշոր օգնություն են ցույց տվել և տալիս են հայ-ադրբեջանական գրողները, գիտնականները, արվեստագետները և այդ բնագավառների աշխատողները: Երկար ժամանակ իրենց բոցավառ խոսքով ընթերցողների սիրտն էին գրավել Դերենիկ Դեմիրճյանը, Ավետիք Իսահակյանը, Ստեփան Զորյանը, Սամեդ Վուրղունը, Հուսեյին Մեհթին, Հրաչյա Քոչարը, Նաիրի Զարյանը, Գարեգին Սևունցը, Գուրգեն Բորյանը և ուրիշներ:

Լրագրի 50-ամյակի օրերին խմբագրության աշխատողներն իրենց պարտքն են համարում հայտնել բոլոր ընթերցողներին, որ իրենք երախտապարտ են մշակույթի, գիտության, արվեստի այն ներկայացուցիչներին, ովքեր երկար տարիների ընթացքում իրենց հոդվածներով, բանաստեղծություններով, խորհուրդներով նպաստել են լրագրի առջև ծառացած պատվավոր խնդիրների հաջող լուծմանը:

Անգնահատելի է եղբայրական երկու ժողովուրդների կավակների օգնությունն ու աջակցությունը մեր լրագրին, որի էջերում հաճախ հանդես են եկել և հանդես են գալիս Արտաշես Կարինյանը, Գեղամ Սարյանը, Հմայակ Սիրասը, Տաթևիկ Սապանդարյանը, Գոհար Գասպարյանը, Սուլեյման Ռուստամը, Միրզա Իբրահիմովը, Սուլեյման Ռահիմովը, Մամեդ Ռահիմը, Ալի Վալիևը, Մամեդ Արիֆ Դադաշ-զադեն, Սերո Խանզադյանը, Սիլվա Կապուտիկյանը, Գևորգ Էմինը, Էդվարդ Թոփչյանը, Գ. Ղարիբջանյանը, Ա. Մնացականյանը, Ծ. Աղայանը, Գ. Գալոյանը և շատ ուրիշներ:

Հայ նկարչության նահապետ Մարտիրոս Սարյանի, համբավավոր գիտնական Վիկտոր Համբարձումյանի մեր թերթում տպագրված յուրաքանչյուր խոսքը մեծ հրճվանքով է ընդունվում ընթերցողների կողմից: Մարտիրոս Սարյանը, Սովետական Ադրբեջանի 35-րդ տարեդարձի օրերին «Սովետ Էրմանիստանի» թերթի միջոցով դիմելով ադրբեջանական ժողովրդին, գրել է. «Հանրապետության խորհրդայնացման օրը ողջունում եմ իմ արվեստակից ընկերներին, Ադրբեջանական ՍՍՀ մշակույթի և արվեստի աշխատողներին: Ադրբեջանական ժողովրդին մեծ հաջողություններ եմ ցանկանում կոմունիզմի շինարարության բնագավառում»:

Ադրբեջանական ժողովրդական գրող Միրզա Իբրահիմովը գրել է. «Սիրելի Հայաստան, դու Ադրբեջանի թանկագին, վստահելի բարեկամն ես, նրա բարի և ազնիվ հարևանը: Ես հիացած եմ նոր, կոմունիստական կյանքի կառուցման, մշակույթի և արվեստի բնագավառում քո ձեռք բերած հաջողություններով: Քո մշտական բարեկամը՝ ադրբեջանական ժողովուրդը հպարտանում է, գիտությունը, մշակույթն ու արվեստը զարգացնող, ամբողջ Սովետական Միությունում և աշխարհում ճանաչված քո ազնիվ տղաների և աղջիկների անուններով: Թող քո անունը Արարատ լեռան նման միշտ հպարտ ու բարձր լինի և փայլի:

Հարազատ և թանկագին Հայաստան. կեցցե՛ս դարեդար»:

Սուլեյման Ռուստամը Հայաստանին նվիրած բանաստեղծություններից մեկում գրում է.

Քեզ իմ ողջույնը սրտագին ու ջերմ,
Հոգուս մեջ պահած կրակները տաք:
Քեզ համար Բաքվից ողջույն եմ բերել
Ես եղբայրության կարոտները թանկ:

Սիրտս քո սիրտն է՝ երգասեր ու նուրբ,
Իմ սրտի մեջ է քո սիրտը վաղուց,
Մենք խաղաղության երգերով ենք սուրբ
Սարերի լանջին մեր արտը քաղում...

Դու իմ տաք տունը այս աշխարհի մեջ
Իմ մոր նման ես ինձ կանչում ձեռքով,
Ես ուր էլ գնամ, արբած եմ հավերժ
Քո կռունկաչյա Սևանի երգով:

Ժողովրդական տնտեսության և մշակույթի զարգացման բնագավառում Սովետական Հայաստանի նվաճումների պրոպագանդումը լրագրի կարևոր խնդիրներից մեկն է, որը, տպագրելով հոդվածներ, նյութեր, օգնում է ընթերցողներին ճիշտ գնահատելու մեր հաջողությունները և յուրաքանչյուր աշխատողի տեղն ու դերը հասարակական կյանքում:



Հովհաննես Թումանյանի, Կոմիտասի 100-ամյա հոբելյանների տոնակատարությունը վերածվեց ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության տոնի: Այդ տոնակատարության օրերին լրագրի էջերում տասնյակ հոդվածներ տպագրվեցին, որոնց միջոցով ադրբեջանցի ընթերցողները ծանոթացան Թումանյանի և Կոմիտասի կյանքի և ստեղծագործության, նրանց հումանիստական, համամարդկային գաղափարների հետ:

... Անհրաժեշտ եմ համարում նշել, որ ադրբեջանական ընթերցողին հայ գրականության հետ ամենից շուտ ծանոթացնում է «Սովետ Էրմանիստանը»: Ա. Իսահակյանի, Ն. Զարյանի, Գ. Էմինի, Հ. Շիրազի, Հր. Հովհաննիսյանի և մի շարք ուրիշների բանաստեղծությունների թարգմանություններն առաջին անգամ տպագրվել են մեր լրագրում: Այսպիսով, «Սովետ Էրմանիստանի» լրագիրը հայկական ընթերցողներին հաղորդակից է դարձնում հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի նվաճումներին:

Սովետական ժողովուրդը և համայն աշխարհի առաջադեմ մարդկությունը բուռն ոգևորությամբ նշեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը: Լենինյան թեման դարձավ լրագրի նյութերի առանցքը: Նրա էջերում բազմաթիվ հոդվածներ տպագրվեցին Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության, մարքս-լենինյան տեսության վերաբերյալ: Տասնյակ էջեր և հոդվածներ է տպագրված եղբայրական հանրապետությունների ժողովրդական տնտեսության և մշակույթի զարգացման, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների փոխադարձ օգնության մասին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը կարևոր իրադարձություն հանդիսացավ կուսակցության և երկրի կյանքում: ՍՄԿԿ XXIV և ՀԿԿ XXV համագումարների որոշումները սահմանել են մեր առաջիկա խնդիրները: Խմբագրությունը մեծ ուշադրություն է նվիրում համագումարի առաջադրած նոր խնդիրների պրոպագանդմանը: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների պրոպագանդան, նաև իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման ընթացքի լուսաբանումը, սոցիալիստական մրցության կազմակերպումն այժմ լրագրի ուշադրության կենտրոնումն են:

Լրագրի 50-ամյակի տոնակատարության նախօրյակին, «Սովետ Էրմանիստանը» պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով: Բարձր պարգև է միաժամանակ թերթի հազարավոր ընթերցողների, բանգյուղթղթակիցների, մեր հանրապետությունում ապրող և աշխատող ադրբեջանցիների հայրենանվեր աշխատանքի գնահատականը: Թերթն իր առջև ծառացած խնդիրները կարողացել է լուծել հաջողությամբ նաև այն բանի շնորհիվ, որ նրա հազարավոր ընթերցողներ իրենց նամակներով, խորհուրդներով օգնել են խմբագրությանը, հուշել այնպիսի թեմաներ, որոնց լուսաբանումը լայն ընդունելություն է գտել:

Մեծ պարգևը նորանոր սխրանքների է կոչում: Խորապես գիտակցելով այն՝ թերթի խմբագրության կոլեկտիվն ավելի եռանդուն կաշխատի և այսուհետև ևս պատվով կկատարի կուսակցության առաջադրանքները:



Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար

# ՄՐՏՈՎ ՈՒ ԳՈՐԾՈՎ

Հայաստանի լենինյան կոմերիտմիության հիսնամյա երթի, նրա մաքառումների և աշխատանքային սխրանքների, նվաճումների և հաղթանակների տարեգրության մեջ վառ էջեր են գրել նաև Հրազդանի շրջանի կոմերիտականներն ու երիտասարդները։ Փորձրկածինների այդ սերունդը հիսուն տարի է, ինչ զինվորագրվել է կոմունիստական կուսակցության գաղափարներին, համախմբվել նրա մարտական դրոշի ներքո, կոփվել և առնականացել, դարձել իր նրջանկության իսկական կերտողը։ Նախկին Ախտայում ևս կոմերիտականների հաղթարշավն սկսվեց 1920 թվականից։ Նրանք ակտիվորեն մասնակցեցին շրջանում սովետական կարգերի հաստատմանը և դաշնակցականների 1921 թ. փետրվարյան ավանտյուրայի ջախջախմանը։

Հին Ախտան բացառապես գյուղատնտեսական շրջան էր։ Տնտեսական քաղաքականության գլխավոր հարցն այստեղ գյուղի սոցիալիստական վերակառուցումն էր, որը նախապատրաստվում էր մեր կուսակցության կողմից։ 1922 թ. Ախտայի շրջանային կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների միացյալ կոնֆերանսը քննարկեց նոր տնտեսական քաղաքականության և կոոպերացիայի հարցը՝ կապված ՌԿ(բ)Կ իններորդ համագումարի որոշումների հետ։ Կենսագործելով կուսակցության առաջադրած նոր խնդիրները՝ շրջանի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները լուրջ աշխատանք ծավալեցին չքավոր, բատրակ և միջակ գյուղացիների շրջանում, ամրապնդեցին նրանց դաշինքը։ Գյուղի սոցիալիստական վերակառուցման առաջնեկը շրջանում Խոտորջրի կոմունան էր, որը հիմնադրվեց 1926 թ.։ Մեկ տարի անց կաթնապրանքային կոլեկտիվ տնտեսություն ստեղծվեց Ցանտան գյուղում։ Գյուղի սոցիալիստական վերակառուցման շրջանում կոմերիտականները, կոմունիստների հետ միասին, ակտիվ պայքար կազմակերպեցին կոլեկտիվ տնտեսությունների կազմակերպման և ամրապնդման, կուլակային տարրերի դիմադրության ճնշման համար։ Այդ տարիներին աճեցին, կոփվեցին և իրենց որպես լավագույն կոմերիտական ակտիվիստներ դրսևորեցին Հ. Հակոբյանը և Ա. Ղազարյանը (Աթարբեկյանից), Մ. Դանիելյանը և Մ. Խաչատրյանը (Ջրառատից), Մ. Օհանյանը և Ա. Դանիելյանը (Հրազդանից) և ուրիշներ, որոնք հետագայում դարձան կոլտնտեսությունների և սովխոզների անվանի կազմակերպիչներ և ղեկավարներ։



Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից շրջանի կոմերիտականներն ու երիտասարդներն իրենց ձեռքը վերցրին կուլտուրական աշխատանքի կազմակերպման և անգրագիտության վերացման գործը։ Նրանցից շատերը սովորեցին Երևանում բացված կարճաժամկետ վերապատրաստման դասընթացներում և, դրանք ավարտելուց հետո, լծվեցին պրակտիկ ակտիվ աշխատանքի։ Չնայած դպրոցների և կուլտուրական օջախների սակավությանը՝ նրանք մեծ եռանդով և նվիրվածությամբ ջանում էին ցրել գյուղի դարավոր խավարը։ Քսանական թվականների սկզբին շրջանում կային ավելի քան 10 հազար անգրագետներ, որոնց ճնշող մեծամասնությունը, մի քանի տարիների ընթացքում, ինտելիգենցիայի և երիտասարդության քըրտնաջան աշխատանքի շնորհիվ, դարձավ գրագետ կամ կիսագրագետ։

– Շրջանի կուսկազմակերպությունները, ի՛ կատարումն ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1932 թ. սեպտեմբերի 7-ի «Միջոցառումներ կոմերիտմիությանը ցույց տրվող օգնության մասին» որոշման, զգալիորեն ուժեղացրին կոմերիտական կազմակերպությունների ղեկավարումը, լուրջ պայքար ծավալեցին կոմերիտական կազմակերպությունների մարտունակության բարձրացման, նրանց քաղաքական ակտիվության և ինքնագործունեության զարգացման համար։

1937 թ. արդեն շրջանում գործում էին 64 սկզբնական ԼԿԵՄ կազմակերպություններ, որոնց շարքերում կար 1045 մարդ։ Կոմերիտականներից շատերն աշխատում էին գյուղատնտեսության բնագավառում և լայնորեն ընդգրկվել էին ստախանովյան շարժման մեջ։ Այսպես, շրջանի երիտասարդ մեխանիզատորներ Մ. Գալստյանը և Լ. Ալոյանը մեկ սեզոնի ընթացքում վարեցին 850-ական հեկտար հողատարածություն։ Անվանի ստախանովականներ էին Խոտորջրի կոմունայի կթվորուհի Վարվառա Սոֆյանը, Բջնիի կոլտնտեսության ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար Ք. Մանուկյանը։ Վերջինս 100 մայր ոչխարից ստացել էր 115 գառ։

Հայրենական մեծ պատերազմն ընդհատեց շրջանի աշխատավորության, այդ թվում երիտասարդության խաղաղ աշխատանքը։ Հարյուրավոր կոմերիտականներ ու երիտասարդներ կամավոր մեկնեցին ռազմաճակատ՝ պաշտպանելու հայրենիքը։ Հրազդանցի ավելի քան 6 հազար մարտիկներ մարտնչեցին ճշնամու դեմ։ Նրանցից 2880-ը հերոսաբար զոհվեցին մեր հայրենիքի ազատության և անկախության համար։ Նրանց զգալի մասը կոմերիտականներ և երիտասարդներ էին։ Նահատակվածների հիշատակին ամենուրեք կանգնեցվել են հուշարձան-կոթողներ։ Հրազդանցի շատ երիտասարդներ Հայրենական պատերազմի տարիներին արժանացան կառավարական բարձր պարգևների։ Նրանցից կարելի է հիշատակել Հ. Մինասյանին, Յ. Նեվերովին (Հրազդան), Խ. Գալստյանին (Աթարբեկյան), Ա. Կարապետյանին (Կաքավաձոր) և շատ ուրիշների։ Ցանտանցի կոմերիտական Գ. Ոպանյանի կուրծքը զարդարում են «Փառքի» առաջին, երկրորդ և երրորդ աստիճանի շքանշանները։ Այժմ նա Ցանտանի գյուղական սովետի նախագահն է։ Մարտական փառավոր ուղի է անցել Գ. Ավետիսյանը, որը կոմերիտմիությանը զինվորագրվել էր նրա ստեղծման առաջին օրից՝ 1920 թվականից։ Նա Խասանլճի և Խալխին գոլի շրջանում ճապոնական սամուրայների դեմ մղած կռիվների ակտիվ մասնակից է, Հայրենական մեծ պատերազմի ժամանակ եղել է բրիգադի հրամանատար։ Արիության և խիզախության համար պարգևատրվել է Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի առաջին աստիճանի,

Կարմիր աստղի, Բոգդան Խմելնիցկու երկրորդ աստիճանի շքանշաններով և մարտական 10 մեդալներով։

Ռազմաճակատում կռվող իրենց հայրերին ու եղբայրներին կոլտնտեսային դաշտերում փոխարինելու եկան կանայք, պատանիները և աղջիկները։ 1941 թ. հունիսին Հրազդանում տեղի ունեցավ երիտասարդ կանանց և աղջիկների հավաք, որի մասնակիցները բաց նամակով դիմեցին հանրապետության երիտասարդությանը։ Նամակում ասված էր. «Մենք, ինչպես միշտ, այնպես էլ այժմ, առանց խուճապի մատնվելու պատրաստ ենք ամեն կերպ օգնել մեր հարազատ և հերոսական կուսակցությանը՝ թշնամուն կործանող և ոչնչացնող հարված հասցնելու համար» («Սովետական Հայաստան», 28 հունիսի, 1941 թ.)։

Հրազդանցիները պատերազմի բոլոր տարիներին գործի վերածեցին իրենց սրբազան խոստումը։ 1942 թ. շրջանի կոլտնտեսություններում աշխատում էին ավելի քան 1500 կոմերիտականներ։

Գիտակցելով իր հայրենասիրական պարտքը՝ շրջանի երիտասարդությունը գործուն մասնակցություն ունեցավ մարտական ինքնաթիռների շարասյուների ստեղծմանը՝ այդ նպատակին հատկացնելով իրենց խնայողությունները։ 1943 թ. հինգ ամսում նրանք հավաքեցին և հայրենիքին նվիրեցին մեկ միլիոն 142 հազար ռուբլի, որի համար շրջանի աշխատավորությունն արժանացավ գերագույն գլխավոր հրամանատարի շնորհակալությանը։

Կենսագործելով ՀամԼԿԵՄ XII համագումարի որոշումները՝ շրջանի կոմերիտականները 1944 թ. լուրջ հաջողություններ ձեռք բերեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում։ Գարնանացանին մասնակցեցին 1200 կոմերիտականներ, աշխատանքի որակի ստուգման նպատակով կազմակերպվեց 27 թեթև հեծելազորային ջոկատ, կոմերիտականների ուժերով դաշտ տեղափոխվեց 8170 տոննա հանքային և օրգանական պարարտանյութ։ 1943—1944 թթ., առանց արտադրությունից կտրվելու, 40 կանայք տիրապետեցին մեխանիզատորի մասնագիտության։

Պատերազմն ավարտվեց մեր ժողովրդի փայլուն հաղթանակով։ Հարյուրավոր հրազդանցիներ, որոնք կովկասյան նախալեռներից հասել էին մինչև Բեռլին, իրենց վավերագրերը թողել ֆաշիզմի որջի՝ Ռայխստագի, պատերին, վերադարձան իրենց խաղաղ և ստեղծագործ աշխատանքին։ Նրանք անմիջապես նոր շունչ, նոր ոգի հաղորդեցին կոլտնտեսային դաշտերին։ 1947 թվականը բարձր բերքի տարի էր Հրազդանի շրջանի աշխատավորության համար։ Բարձր բերքի օղակավարներ, կոմերիտականներ Ս. Հովհաննիսյանը, Ս. Հունանյանը, Ս. Վարդանյանը այդ տարի արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի պատվավոր կոչման։

Հայաստանի լենինյան կոմերիտմիության, այդ թվում նաև նրա մարտական ջոկատը հանդիսացող Հրազդանի շրջանային կազմակերպության անցած ուղու ամենափառավոր էջերից մեկը Սևան—Երևան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարության շեֆության իրականացումն էր։ Հրազդանի կոմերիտականները և երիտասարդներն ակտիվորեն մասնակցեցին Սևանի, Գյումուշի և Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանների կառուցմանը։ Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում 1947—1948 թթ. կոմերիտական ուղեգրերով աշխատանքի գործուղվեց մոտ 2000 կոմերիտական, նրանցից 570-ը Հրազդանի շրջանից էին։ Հաջորդ տարիներին կոմերիտականների թիվն այդ խոշորագույն կառույցում կրկնապատկվեց։ Դա հնարավորություն ընձեռեց շինարարական շատ հանգույցներում և տեղամասերում ըստեղծել սկզբնական կոմերիտական կազմակերպություններ և մշտական հսկողության տակ պահել պլանների կատարումը բոլոր տեղամասերում։ Գյումուշի տեղամասում աշխատում էին 400 կոմերիտականներ, որոնցից 196-ը հնգամյա պլանը կատարեցին երեք տարում։ Այդ տեղամասում աշխատող կոմերիտականներ Պ. Եղիազարյանի և Վ. Մանուկյանի բրիգադաներն իրենց առաջադրանքները սիստեմատիկաբար կատարում էին 170—180 տոկոսով։ Կառույցի կոմերիտական կազմակերպությունները շնորհակալ գործ կատարեցին որակյալ շինարարական կադրեր պատրաստելու ասպարեզում։ Միայն 1949—1958 թթ. ավելի քան 1000 երիտասարդներ սեղմ ժամկետներում ձեռք բերեցին հյուսնի, խառատի, փականագործի, թունելագործի մասնագիտություն։ Երիտասարդության ուժերով Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունում կատարվեց 4 միլիոն խմ հողային ու քարային, 700 հազար խմ բետոնային և երկաթբետոնային աշխատանք, կառուցվեցին բանվորական մի քանի ավաններ, կուլտուրական օջախներ։ ՀԼԿԵՄ Կենտկոմը 1950 թ. ըստ արժանվույն գնահատեց Գյումուշի հիդրոէլեկտրակայանի կոմերիտականների աշխատանքային սխրանքը և նրանցից 51 առավել առաջավորների պարգևատրեց պատվոգրով։

1952 թ. ծավալվեց Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Շրջանի կոմերիտականները դարձյալ ստանձնեցին այդ խոշոր կառույցի շեֆությունը։ 354 կոմերիտականներ գործուղվեցին այնտեղ և մասնակցեցին նրա կառուցմանը։ Շուտով կառույցում կազմակերպվեց 9 կոմերիտական-երիտասարդական բրիգադա, որոնք լայնորեն ծավալեցին սոցիալիստական մրցությունը։ Մրցության ավանգարդում էին Ժ. Թադևոսյանի և Վ. Ռուսովի կոմերիտական բրիգադաները, որոնք իրենց առաջադրանքները սիստեմատիկաբար կատարում էին 150—170 տոկոսով։ 1953 թ. գործարկվեց Գյումուշի, իսկ 1959 թ.՝ Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը։ Դրանով իսկ դրվեց Հրազդանի շրջանի էկոնոմիկայի, նրա աշխատավորության կյանքի ու կենցաղի արմատական վերափոխման հիմքը։

Հրազդանի շրջանի ընդերքի հետախույզները Մեղրաձոր գյուղից ոչ հեռու հայտնաբերեցին նեֆելինային սիենիտների հսկայական պաշար, որի բազայի վրա նախագծվեց և 1960 թ. սկսվեց Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը։ Վերջերս լրիվ կարողությամբ գործարկվեց լեռնաքիմիական կոմբինատի ցեմենտի արտադրությունը, իսկ կոմբինատի կավահողի և քիմիական նյութերի արտադրությունները, ինչպես նախատեսված է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում, կգործարկվեն իններորդ հնգամյակի տարիներին։

1969 թ. լրիվ կարողությամբ գործարկվեց նաև Հրազդանի ջերմաէլեկտրակայանը (ՋէԿ)՝ 300 հազար, իսկ ընթացիկ տարվա սկզբներին՝ պետական շրջանային էլեկտրակայանի (ՊՇէԿ) առաջին բլոկը՝ 200 հազար կիլովատ հզորությամբ։ Այդ օբյեկտների գործարկմամբ շրջանը վերածվեց մեր հանրապետության էներգետիկայի գլխավոր բազայի։ Ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի տարիներին, համաձայն ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների, պետք է գործարկվեն նոր, լրացուցիչ կարողություններ Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում։ Նրա հզորությունը կհասցվի 1.200 հազար կիլովատի։ Հրազդան քաղաքում գործում են նաև մի շարք ուրիշ արտադրական ձեռնարկություններ։

Այսպես ձևավորվեց և դեռևս շարունակում է ձևավորվել մեր հանրապետության երիտասարդ արդյունաբերական կենտրոնը՝ Հրազդանը։ Մոտավորապես այդ տարիներին ձևավորվեց նաև Հայաստանի մյուս արդյունաբերական կենտրոնը՝ Չարենցավանը։ Երիտասարդությունն ակտիվ մասնակցեց նաև արդյունաբերական այդ քաղաքի կառուցմանը։ 1958 թ. շահագործման հանձնվեց Չարենցավանի արդյունաբերական ձեռնարկությունների առաջնեկը՝ երկաթ-բետոնե կառուցվածքների գործարանը, որն այժմ բարձրորակ երկաթ-բետոնե կառուցվածքներ է մատակարարում մեր հանրապետությունում կառուցվող էլեկտրակայաններին։ Այստեղ, ներտաշ հաստոցների գործարանի կամարների տակ, կյանքի ուղեգիր ստացավ առաջին հորիզոնական ներտաշ հաստոցը։ Հետագայում ձեռնարկության արտադրանքը լայն ճանաչում գրտավ տեխնիկապես զարգացած մի շարք արտասահմանյան երկրներում, այդ թվում՝ Անգլիայում, ԳՖՀ-ում, ԳԴՀ-ում, Չեխոսլովակիայում և այլուր։ 1960 թ. այդ գործարանի կոմերիտական կազմակերպությունը լայն շարժում ծավալեց բարձրորակ արտադրանք թողարկելու և արտադրության բարձր կուլտուրայի համար։ Այդ ժամանակներից ի վեր երիտասարդ ներտաշողները հաստատակամորեն բարձրացնում են իրենց արտադրանքի որակը։ Վերջին տարիներին նրանք որոշակի հաջողության հասան ծրագրային կառավարման հաստոցների արտադրության ասպարեզում։ Չարենցավանն ունի արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ, որտեղ աշխատողների միջին տարիքը գրեթե չի անցնում 25-ից։

Հրազդանի շրջանի աշխատավորների նվաճումներն առանձնապես նշանակալից էին ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյակի տարիներին։ Հատկանշականն այն է, որ հնգամյակի հերոսները միշտ առանձին անհատներ և խմբեր չեն, այլ ամբողջական բանվորական կոլեկտիվներ։

Շրջանի կոմերիտականներն ու երիտասարդությունը ակտիվ գործում են կառուցման ոլորտներում։ Հրազդանի շինարարները և աշխատավորությունը լավ են ճանաչում «Հրազդանշին» տրեստի 2-րդ շինվարչության կոմերիտական կազմակերպության քարտուղար, երիտասարդ կոմունիստ Ս. Գալստյանին և կոմերիտական Հ. Մուրադյանին, որոնց ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադներն արտադրական պլանները մշտապես կատարում են 130—140 տոկոսով։ Կոմերիտական Ս. Գալստյանը դժվարին աշխատանքի հետ միասին սովորեց և ավարտեց երեկոյան միջնակարգ դպրոցն ու շինարարական տեխնիկումը։ Անձնուրաց գործունեությամբ նա համընդհանուր ճանաչման և հարգանքի արժանացավ, իսկ 1970 թ. հունիսին ընտրվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ։

Այժմ, երբ գիտությունը մեր աչքերի առաջ պարզապես հրաշքներ է կատարում և դառնում հզոր արտադրաուժ, արդեն, ըստ էության, անհնար է ժամանակակից մակարդակով արտադրություն վարել՝ առանց գիտության և տեխնիկայի սերտ դաշինքի։ Ահա թե ինչու շրջանի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները տեխնիկական առաջադիմության հարցերը մշտապես պահում են իրենց ուշադրության կենտրոնում։ Բերեմ մի բնորոշ օրինակ։ Չարենցավանի ներտաշ հաստոցների գործարանի կոմունիստներին ու կոմերիտականներին երկու տարի առաջ լրջորեն մտահոգում էր այն բանը, որ իրենց արտադրած ներտաշ հաստոցները դժվարությամբ են իրացվում ներքին և արտաքին շուկայում։ Նրանց նախաձեռնությամբ գործարան հրա-



վիրվեցին ՍՍՀՄ հաստոցա-գործիքաշինական մինիստրության համապատասխան գլխավոր վարչության մասնագետները և ղեկավար աշխատողները, որոնց օգնությամբ ճշտվեց ձեռնարկության հետագա մասնագիտացման հարցը, միաժամանակ որոշվեց լայն նախապատրաստական աշխատանք ծավալել ծրագրային կառավարման հաստոցների արտադրության ասպարեզում։ Գործարանի դիրեկցիայի և հասարակական կազմակերպությունների հանձնարարությամբ մի խումբ երիտասարդ և հմուտ մասնագետներ, գլխավոր կոնստրուկտոր, այժմ գործարանի գլխավոր ինժեներ Ս. Մարտիրոսյանի ղեկավարությամբ, կատարելագործեցին հորիզոնական ֆրեզերային հաստոցների կառուցվածքը։ Երկու տարվա համառ ու քրտնաջան աշխատանքը լավ արդյունք տվեց. գործարանի կոլեկտիվն օրերս թողարկեց իր ծրագրային կառավարման առաջին հաստոցը։

Ներտաշ հաստոցների գործարանը նոր հնգամյակում պետք է լրիվին մասնագիտանա ծրագրային կառավարման հաստոցների արտադրությամբ։ Այդ հարցը այս տարվա հուլիսի 15-ին հանգամանորեն քննարկվեց կոմերիտական կազմակերպության ժողովում, որին մասնակցեցին ձեռնարկության ղեկավար աշխատողներն ու կոմունիստները։ Կոմերիտական ժողովը միահամուռ որոշեց՝ ստանձնել ծրագրային կառավարման հաստոցների արտադրության շեֆությունը։ Գործարանի կոմերիտական կազմակերպության նախաձեռնությամբ բազմիցս անց են կացվել խառատների, ֆրեզերագործների, այլ մասնագիտության առաջավոր բանվորների մրցումներ։ Հաղթողներն արժանացել են նյութական և բարոյական խրախուսանքի։

Եթե ՍՄԿԿ XXIII համագումարից հետո կուսկազմակերպությունների ջանքերի շնորհիվ զգալիորեն բարձրացավ շրջանի կոմերիտական կազմակերպությունների մարտունակությունը, զարգացան նրանց ակտիվությունն ու ինքնագործունեությունը, կատարելագործվեցին կոմերիտական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ապա այժմ շատ կոմերիտական կազմակերպություններում նկատվում է լուրջ հասունություն՝ տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման գործում։ Կոմերիտական կազմակերպությունները ոչ միայն ժամանակին արձագանքում են մեր երկրի և հանրապետության կոմերիտական կազմակերպությունների նոր և առաջավոր նախաձեռնություններին, այլև հաճախ իրենք են հանդես գալիս լավագույն նախաձեռնություններով։ Այսպես, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի կոմերիտականները, քննարկելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման գործում կոմերիտական կազմակերպության խնդիրները, հանդես եկան հայրենասիրական մի նոր նախաձեռնությամբ, որի նշանաբանն էր. «Տեխնիկական առաջադիմությունը, երիտասարդների ջերմ սրտերը, մտքի թռիչքը, ձեռքի վարպետությունը՝ հայրենիքին»։ Բանն այն է, որ պետական շրջանային էլեկտրակայանը ոչ միայն խոշորագույնն է մեր հանրապետությունում, այլև ամենանորը և ամենաբարդը։ Բարդ և նորագույն տեխնիկային տիրապետելու ձգտումը կյանքի կոչեց երիտասարդ էներգետիկների այդ հիանալի շարժումը։

Չարենցավանի գործիքաշինական գործարանի կոմերիտականները, գործարանի դիրեկցիայի և սկզբնական կուսկազմակերպության օգնությամբ, ստեղծեցին մեքենահաշվիչ կայան, սովորեցին աշխատել «Նաիրի—2» հաշվիչ մեքենայի վրա, իսկ այժմ զբաղվում են գործարանի ավտոմատ կառավարման սիստեմի ստեղծմամբ։

Շրջանի կառույցների կոմերիտական կազմակերպությունները լայնորեն պայքարում են շինարարական-մոնտաժային աշխատանքների որակի բարձրացման համար, կոմերիտական լուսարձակները և երգիծական թերթիկները խարազանում են խոտանարարներին։ Գյուղի նկատմամբ իրականացվող շեֆական աշխատանքը ևս հիմնականում բաժին է ընկնում մեր կոմերիտականներին և երիտասարդությանը։ Խոտհնձի և բերքահավաքի շրջանում առավել ակտիվություն դրսևորեցին Չարենցավանի գործիքաշինական, Ներտաշ հաստոցների, «Կենտրոնական ձուլարան». երկաթ-բետոնե կառուցվածքների գործարանների, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի, պետական շրջանային էլեկտրակայանի, միկրոշրջանի գործարանի, «Հրազդանշին» տրեստի ՋԷԿ-ի և ՊՇԷԿ-ի շինվարչությունների, Մեղրաձորի երկրաբանական արշավախմբի, Հրազդանի և Չարենցավանի ավտոտրանսպորտային ձեռնարկությունների, տեխնիկումների ու դպրոցների կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները։ Թերևս այդ օգնության շնորհիվ էր, որ շրջանի կոլտնտեսությունները ու սովխոզները խոտի կուտակման պլանը կատարել են 130 տոկոսով և պայքարում են այն 150 տոկոսի հասցնելու համար։

Երիտասարդության շրջանում տարվող քաղաքական դաստիարակչական աշխատանքները նոր թափով ծավալվեցին ՍՄԿԿ XXIV համագումարից հետո։ Կուսշրջկոմը կազմակերպեց ՍՄԿԿ XXIV, ՀԿԿ XXV համագումարների պատգամավորների զեկուցումներն ու ելույթները շրջանի գրեթե բոլոր կազմակերպություններում, այդ թվում նաև դպրոցներում, հանդիպումները երիտասարդության հետ։ Կուսշրջկոմի բյուրոյի որոշմամբ, ամսական մեկ անգամ, սահմանվեց ինֆորմացիայի օր։ Այդ օրը շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողները, նախօրոք կազմած գրաֆիկի համաձայն, հանդիպում են աշխատավորությանը, նրանց առջև հանդես գալիս զրույցներով ու զեկուցումներով, պատասխանում նրանց հուզող հարցերին։ Վերջերս շրջանի ղեկավար աշխատողների այդպիսի հանդիպում կազմակերպվեց Չարենցավանի երիտասարդության հետ։

Հրազդանն այսօր վեր է ածվել մեր հանրապետության գլխավոր շինարարական հրապարակի։ Խոշոր արդյունաբերական ձեռնարկություններից և էլեկտրակայաններից բացի, կառուցվում են երկաթուղային և խճուղային նոր ճանապարհներ, գազամուղներ, խոշոր ջրամբարներ, հանգստի գոտիներ, ստեղծվում են նոր առողջարաններ, պիոներական ճամբարներ։ Մի քանի տարի անց Հանքավանի և Նաիրյան ձորերը ծայրից ծայր կլինեն հանգստյան տներ ու պրոֆիլակտորիաներ։ Երկաթուղին մոտակա տարիներին կմոտենի նաև Ծաղկաձոր ու Հանքավան և բնության այդ գողտրիկ անկյունները ավելի մատչելի կդարձնի աշխատավորությանը։ Այս տարի կգործարկվի Ծաղկաձորի ճոպանուղին։

Հրազդանի շրջանի կոմերիտականներն ու երիտասարդությունը Հայաստանի լենինյան կոմերիտմիության 50-րդ տարեդարձը նշանավորում են լուրջ նվաճումներով ու լավ գործերով։ Սակայն մենք գիտակցում ենք, որ այն, ինչ լավ էր երեկ, մեզ չի կարող բավարարել այսօր։ Երիտասարդությունը սիրում է որոնել, պրպտել, ստեղծագործել։ Նա միշտ հավատարիմ կմնա մեր կուսակցության վեհ ուսմունքին, նրա ամենահաղթ դրոշին։

Հ. Ի. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# ԱՅՐԱԿԱՆ ՏԱՐԻՔ

«Հայաստան, ՀԼԿԵՄ Հոկտեմբերյանի շրջկոմ.

Մեծ ուրախությամբ լսեցի Ձեր շրջանի կոմերիտական կազմակերպությանը Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով պարգևատրելու լուրը: Ի խորոց սրտի, ջերմորեն շնորհավորում եմ շրջանի փառապանծ կոմերիտականներին՝ մեծ պարգևի առիթով: Ցանկանում եմ այսուհետև ևս լինել կոմերիտմիության առաջին շարքերում՝ ի փառս մեր մեծ հայրենիքի:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԲԱՂՐԱՄՅԱՆ
Սովետական Միության Մարշալ»։

Հեռագրեր են գալիս տասնյակ ու տասնյակ տեղերից։ Թանկ ու պարտավորեցնող խոսքեր։ Եվ հայրերը համբուրում են որդիների ճակատները. ամբողջ մի շրջանի դիմանկարը փոխող երիտասարդ սերունդը արժանացավ մեծ պարգևի։

Եվ 1968 թվականի նոյեմբերի 5-ից Հոկտեմբերյանն սկսվեց քաղաքի մուտքի հուշայան վրա ամրացված Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանից, ՀամԼԿԵՄ նշանից, հուշայունը զարդարող նաիրուհու՝ արարատյան դաշտի բարիքներով զարդարված պատկերաքանդակով, առատության, աշխատանքի խորհրդանիշ կանչից։

Հուշասյունը դարձավ երիտասարդության խորհրդանիշը։

Հոկտեմբերյանի կոմերիտական կազմակերպությունն առաջին երջանիկն է, որ, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում կոմերիտականների և երիտասարդության ներդրած մեծ ավանդի, երիտասարդության շրջանում կատարած կոմունիստական դաստիարակության ակտիվ աշխատանքի համար արժանացել է կառավարական բարձր պարգևի։

Այսօր, Հայաստանի կոմերիտմիության ծննդյան 50-ամյակի առթիվ, նորից շնորհավորենք հոկտեմբերյանցիներին և նորից պատմենք նրանց մասին։

Այս սերնդի դիմանկարը գամված է արևին։ Նույն արևն է՝ շոգ, թանձր, որ բուռ-բուռ հալվում է ու լցվում մարդկանց մեջ։ Նույն արևն է, որ հարավոտ մեր դաշտում ցանկապատերով բաժան-բաժան ենք արել, ջրերի նման առու-առու ենք հանել, և, նայի՛ր, չեկ արևը մտնում է հողի մեջ։ Եվ այս սերունդը արևի տակ փռել է իր վարար ուժը, եռանդը, օրերի արդար հոգսն է վերցրել ուսերին ու բռնել տարիների, դարի վերընթաց ճամփան։

Պապերի գոյի կռիվը հավերժացավ այս դաշտով ու այս նոր Սարդարապատով։ Ավերներից, ավարներից հոգնած դաշտը շնչել է, խաղաղ մայրության անցել և, երբեմնի համատարած խեղճության փոխարեն, երիտասարդությունը մի հնչեղ, մի շենշող հեռաստան է փռել։ Պապերի բացած աշխատանքի, հավատի, սիրո ակոսները լցվել են պիրկ ու պատրաստ ձեռքերի նետումներով, խիտ շարքերով։ Եվ սարդարապատցի խեղճ պապի թոռը ճանաչվել է որպես հոկտեմբերյանցի այգեգործ ու խորդենագործ, անուշ հյութ ու կոմպոտ պատրաստող, հաստոցներ առաքող, աղուտներ յուրացնող, ջրանցքներ բացող։ Բարձրացել է երիտասարդությունը պապերի կռիվ-մոխրադաշտերից,

բարձրացել է և հավատի աչքերով նայել շուրջը. այսօր այս սերունդն է, որին միայն չես կարող ուրախացնել Մեծամորի, Արմավիրի պեղումներով։ Արմավիրից մի պեղված հնության հայտնությամբ ժպտացող պատմաբանի հայացքի տակ նոր արմավիրցին ուրախանում է իր ստեղծած օրերի լիությամբ, այգու բերքով, ջրի առատությամբ։

Կոմերիտմիության շրջկոմի առաջին քարտուղար Բենիամին Ավչյանի համար զարմանալի չէ իր պապի՝ Իսահակ Վասիլևի, կյանքը։ Դե, այնպես է եղել, որ պապը ծնվել է իրենից էլ, հորից էլ առաջ, հասակ է առել այն ժամանակ, երբ սպասվածը, երազածը, ցանկալին, այն ամենը, ինչ պետք է ծնվեր մեծ ամպրոպից հետո, կուչ էր եկել «Վարդան Զորավար» զրահագնացքի վրա, շարժվում էր Ջաջուռ—Բայանդուր ուղղությամբ և պատրաստ էր նոր ծագող արևի համար իր կյանքը տալու, ուզում էր, որ հանկարծ չկոտրվի ծագող արևի պռունկը։ Ուզում էր մի բզկտված արևի փոխարեն մի լրի՛վ, մի մե՛ծ, մի արդա՛ր արև ելնի։ Եվ նոր արևի արարման համար նա արյուն տվեց։ Ու հիմա այն տարիքին է, երբ շատ է դուր գալիս այն, որ կոմերիտականներն ու պիոներները հանդիպումներ են կազմակերպում իր հետ և ինքն առատ-առատ պատմում է լեգենդանման այն օրերի պատմությունները։ Մեկ տխուր ու արցունքախառն, մեկ ժպտուն ու հաղթական դեպքեր է պատմում։ Եվ պիոներները տեսնում են նրա բերած անձրևի ուժը, որի շնորհիվ կանաչին տվեց մի արտ, կալը հացով լցվեց, կյանքը ծիծաղեց լիաթոք, և... պիոներները նրան հեշտությամբ բաժանում են հուշերի մառայանից, կտրում են հին աշխարհից ու դարձնում միամիտ մի պիոներ...

Կոմերիտմիության շրջկոմի քարտուղար Բ. Ավչյանի համար զարմանալի չէ, որ Հայրենական պատերազմի ժամանակ իր հոր ձեռքով ռազմաճակատին ուղարկվել է 169 հազար ռուբլի։ Եվ հայրը, գիշեր-ցերեկ աշխատող հայրը, մերժել է երիտասարդ քանդակագործ Նիկոլայ Նիկողոսյանին՝ գոնե մեկ ժամ նրա դիմաց նստել։ «43 թիվն է, հիմա մի ժամ նստել կլինի՞»,— այսքան է ասել։ Բայց ձուլվել է Ցուվարաշ Ավչյանի արձանը, ու հիմա նա... արձանացած է նայում իր բազմանդամ օջախին։ Եվ Ցուվարաշի տղան, Բենիամինը, իր հոր մասին դժվարությամբ է պատմում Մոլդավիայից եկած թղթակցին։ Թղթակիցը հարց է տալիս, իսկ նա քրոջն ասում է՝ մի հատ էլ երգիր, ուրախացրու, թղթակիցը հարց է տալիս, իսկ նա Թումա եղբորն ասում է՝ գինի լցրու, մորն ասում է՝ ուրախ մնա, լավաշ բեր։ Հետո դառնալով թղթակցին՝ ասում է. «Մարդ պետք է սրտով տանի իր բաժին ճակատագիրը։ Ամեն սերունդ իր ճակատագիրն ունի։ Ես էլ լինեի հայրիկիս փոխարեն, այդպես կանեի, պապիս փոխարեն՝ այդպես կանեի»։ Հետո, երբ տխրում են, քրոջն ասում է՝ մի նոր երգ երգիր... Եվ օրեր հետո Մոլդավիայի երիտասարդական թերթում տպագրվում է «Հաց և երաժշտություն» ակնարկը՝ նվիրված անցած տարիներն իրենց մեջ ամփոփած մի լավ ընտանիքի՝ պապ-հայր-որդի գծին։

«Վարդան զորավարի» զինվոր պապի թոռ ու պատերազմական թիկունքում աչքի ընկած հոր տղա Բենիամին Ավչյանը այսօր 7000-ից ավելի կոմերիտական..բանակի շնորհալի ղեկավարն է և... ոչինչ չկա զարմանալու։ Ու թե նա ասում է, որ այս շքանշանը բոլոր տարիների, բոլոր սերունդների աշխատանքի գնահատականն է, բոլորովին էլ համեստություն չի անում, այլ՝ ճիշտ այդպես է։

Եվ ես հանդիպում եմ մի հին մարդու։

«Բատրակ Արտավազդի կյանքի մեջ արմատական փոփոխություն մտավ 1926 թվականին, երբ հերոսական կարմիր բանակը նրան իր շարքերն ընդունեց։ Արտավազդը բանակում այն աստիճան կոփվեց, որ կարողացավ բոլշևիկյան կուսակցության անդամի մեծ ու պատասխանատու կոչմանն արժանանալ... Կոմունիստ Անդրանիկ Խաչատրյանը շատ հետամնաց և կուսակցական կյանքից կտրված մարդ էր, չէր արդարացնում իր կուսակցական կոչումը։ Արտավազդը հատուկ հոգատարություն ցուցաբերեց այդ մարդու նկատմամբ, կուսակցական աշխատանքի մեջ կոփեց նրան և այժմ ընկեր Խաչատրյանը լավագույն բրիգադավար է...»— գրված է «Խորհրդային Հայաստանի» 1935 թվականի դեկտեմբերյան համարներից մեկում։ Նույն թերթի մեկ այլ համարից տեղեկանում ենք, որ Հայկական ՍՍՀ Կենտգործկոմի որոշմամբ. Հայաստանի բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության մի խումբ առաջավորների հետ, Աշխատանքի հերոսի կոչման է արժանացել նաև Արտավազդ Եղիազարյանը։

Ու հիմա Աշխատանքի հերոսը գրկել է մեկ տարեկան թոռնիկին, մատներով տկտկացնում, զբաղեցնում է նրան և պատասխանում իմ հարցերին։

— Հայաստանի նման որբ եմ եղել ու հիմա Հայաստանի նման ամեն ինչ ունեմ,— թոռնիկին վեր բարձրացրեց։

— Կյանքում վրեժ լուծե՞լ ես։

— Իհարկե, կուլակի գործակալ, գյուղխորհրդի նախագահ Սարգսի սև ձեռքով սպանվել էր Ռուբեն Կարապետյանը։ Ցոթ գնդակ անխիղճը շարել էր ակտիվ թղթակցի, թեթև հեծելազորայինի կրծքին։ Եվ այդ այն պահին, երբ Ռուբենը լվացվում էր։ Ամբողջ Հայաստանի



կոմերիտմիությունը ոտքի ելավ։ Վրեժ լուծեցինք։ Մաքրեցինք մեր շարքերը։ Լավ աշխատեցինք, բամբակի բարձր բերք ստացանք և նախկին Մոլլաբայազետը դարձրինք Բամբակաշատ։

— Կյանքում ի՞նչն է եղել քո ուղեկիցը։

— Միշտ անբաժան եմ իմ հավատից։ Եվ միշտ էլ ես ինձ զինվորն եմ համարել լենինյան կուսակցության։ Երբ Հայկական հրետոգընդում ծառայում էի, մի ձի ունեի՝ Բիբար անունով։ Այն օրից մինչև այսօր ես ինձ միշտ զինվորի նման եմ պահել, պատրաստ՝ կատարելու հայրենիքի բոլոր հրամանները։ Եվ շնորհակալ եմ, զինվորիս կուրծքը զարդարված է Լենինի շքանշանով, ուրիշ շքանշաններով ու մեդալներով։

Ես հանդիպեցի մի ուրիշ կոմերիտականի, որը պատերազմի բոցերի մեջ է քննություն հանձնել։ Հոկտեմբեր գյուղում զեկուցում էր կարդում, խոսում էր բերքահավաքի նախապատրաստության մասին։ «Հարկավոր է մեկ մարդու նման»։ Խոսեց նաև Գերմանիայի մասին։ Մեզ հետ փոխադարձ պայմանագիր ունի։ Չէ՛, երբեք չի լինի։ Իսկ եթե հանկարծ լինի, ուրեմն՝ մե՛կ մարդու նման... Եվ մյուս օրը բյուրոյի նիստ է։ «Շրջանի երիտասարդության ինչպես համախմբել բերքահավաքի աշխատանքներում»։ Եվ... պատերազմ. հարկավոր է շտապ 52 աղջիկ տրակտորիստներին տեղավորել աշխատանքի։ Հարկավոր է մեկ մարդու նման։ Եվ դիմում ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարին. «Մենք՝ ՀԼԿԵՄ Հոկտեմբերյանի շրջկոմի բյուրոյի անդամներս, մեր քարտուղարի գլխավորությամբ, կամավոր մեկնում ենք բանակ՝ մեր հայրենիքը պաշտպանելու։ Խնդրում ենք ՀԼԿԵՄ Կենտկոմին միջնորդելու հանրապետական զինկոմիսարիատին՝ մեզ բյուրոյի անդամներիս, մեկ զորամաս նշանակելու։ Հրաչյա Հովհաննիսյան, Վազգեն Մուրադյան, Դվաստամատ Մարգարյան, Սերգո Ալեքսանով...»։ Եվ Մոսկվայի տակ Հրաչյա Հովհաննիսյանը թաղեց իր ընկերներին։ Եվ, երեք ընկերների վրեժը սրտում, շարժվեց դեպի արևմուտք։ Մասնակցեց Բրյանսկի, Բելոռուսական Առաջին և Երկրորդ ռազմաճակատների զորքերի մղած մարտերին, եղավ քաղղեկ, հեծյալ էսկադրոնի հրամանատար, գումարտակի, գնդի հրամանատարի տեղակալ։ Շքանշաններ, մեդալներ ու վերքեր։ Շրջկոմի նախկին քարտուղարը կյանքում անշարժ մնաց միայն քանդակագործ Արա Սարգսյանի դեմ։

Եվ հերոս ղավակ տվեց այս հողը։ Ասում են, որ այս գյուղը հիմնել է Սարգիս Լուկաշինը։ Ժամանակակիցները հիանում էին նրա խելքով։ Լուկաշինի անվան սովետական տնտեսություն։ Հիմնադրվեց ծանր տարիներին, դժվարությամբ, բայց և հավատով։ Ասես ամայության մեջ մարդու հավատն էր փորձվում։ Տարիներն այգիների կանաչ ձեռքերը բարձրացրին վեր, և նույն տարիները երեխաների ձեռքերը բարձրացրին վեր՝ պտուղ քաղելու։ Եվ այգիներից պատերազմ գնաց սովորական մի տղա՝ Հունան Ավետիսյանը։ Նա չհասցրեց հերոսանալ այգիներում։ Օրորոցում թողեց տղային, տան շեմին՝ մորը՝ աղոթելիս։ Երբ փակվել էին բոլոր ճանապարհները և առաջ գնալու տեղ չկար, հայ դյուցազնը ժամանակ չունեցավ հիշելու մորը խաչակնքելիս, տղային՝ օրորոցում զարմացած։ Եվ... ժամանակ չունեցավ իր սխրանքի մեծությունը տեսնելու։ Ավարտեց իր կյանքի ճանապարհը՝ սրտի միջով հաղթության ճանապարհ բացելով։

Օրորոցի տղան հիմա սովորական ավտովարորդ է։ Հոր ծննդավայրը քաշում է։ Գնում է Ղափան՝ տեսնելու հոր արյունի մարդկանց։ Մեքենան արագ վարելու համար կանգնեցնում են վարորդին։

— Փաստաթղթե՞րդ։
— Խնդրեմ։
— Տուգանված ես։
— Պատրաստ եմ։
— Քեզ կարգին չես պահում։
— Ջհասկացա։
— Քո դեմ գրություն էլ կգրենք։
— Գրեք։
— Անուն-ազգանունդ ճիշտ-ճիշտ ասա։
— Փաստաթղթերի մեջ ճիշտ-ճիշտ գրված է։
— Ավետիսյան Հենզել Հունանի՞...
— Ճիշտ այդպես։
— Հունան Ավետիսյան։ Հունանի տղա՞ն ես։
— . . . . . . . . . . .
— . . . . . . . . . . .
— Որ ինձ կանգնեցրիք, չգիտեիք չէ՞, որ ես Հունան Ավետիսյանի տղան եմ։ Խախտում եմ կատարել, պատժեք։ Թող իմ հոր անունը այստեղ ինձ չօգնի։

Համառեց Հենզելը, տուգանքը տվեց և շարժվեց բաց ճանապարհով։

...Ջանֆիդա գյուղում Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հուշարձանի մոտ տեսա մի պատանու. նա լռությամբ կարդում էր 76 այն հերոսների անունները, որոնք գնացին ու չեկան։ Սերմը հողի մեջ թողին, օրորոցում՝ երեխա, գնացին ու չեկան։ Պատանին նորից նայեց որդեկորույս մորը, որի աչքերից ընկած որդու հուշը արցունք էր քամում։ Ապա նայեց շուրջը, տեսավ մարդկանց, որոնք, աշնան արևն առած կոնակներին, հին-հին բաներ են պատմում, ապա ականջ դրեց. բարդիների միջով երգ է գալիս դաշտերից, ապա ձեռքը տարավ գրպանը, հանեց կոմերիտական տոմսը, նայեց համարին, նորից նայեց մարմա-

րին դրոշմված այն մարդկանց անուններին, որոնք գնացին ու չեկան։

— Գնում եմ ծառայելու,— լսելի ասաց նա, շտկվեց ու հանդարտ քայլերով հեռացավ։

Կոլտնտեսության վարչության նախագահ Կարլեն Հարությունյանը երկար ժպտում էր։

Եվ աչք ածես ու տեսնես Օնիկ Մկրտչյանին, տեսնես ու հասկանաս աշխարհիս բանը։ Թե նայես նրա շարած պատին, կասես՝ լավ որմնադիր է, լավ քարտաշ է, թե նայես նրա խնամած այգուն, կասես՝ լավ այգեգործ է, կասես՝ լավ ջրվոր է։ Հաղթանդամ, բարի ու ժպտուն երիտասարդ է Օնիկը, կոմերիտական կազմակերպության քարտուղարը։

Հոկտեմբերյանի № 6 միջնակարգ դպրոցի պիոներական սենյակում ստեղծվել է ձայնադարան։ Ավագ ջոկատավար Հասմիկ Մարտիրոսյանը նայում է ձայնադարանին ու չի կարողանում ժպիտը պահել։ Չէ՞ որ ձայնադարանում խոսում են ժամանակները։ Թե կա այսօրը, կա նաև հանդիպում անցյալի հետ։ Եվ լսում ես սովետական կարգերի հաստատմանը մասնակցած մարդու ձայն, և՛ գրողների, և՛ սոցիալիստական աշխատանքի հերոսի, և՛ կուսակցական, սովետական աշխատողի ձայն։

Դու լսում ես հին ու նոր ձայներ, հաղթող ձայներ, մեծ հավատավորների քայլերգն ես լսում ու նույն պահին էլ զգում ես, որ մի խաղաղ, տաք ու բարի անձրև է գալիս։ Զգում ես, որ մի նոր սերունդ, որպես արժանավոր թոռը Մայիսյան ապստամբության մասնակցի, «Վարդան Զորավարի» ու Սարդարապատի, որպես թոռը քսան թվականի ու նոյեմբերի,— հպարտության ալիքներով բարձրանում է դեպի երազած բարձունք։ Այսօր այդ սերնդի ձեռքին մեխակների փունջ կա ու այդ փնջերը սիրով նվիրում են նրանց, ովքեր հաղթեցին քսան թվականին, համայնացման տարիներին, մեծ պատերազմում, հնգամյակներում, ովքեր առաջնորդում են իրենց դեպի եկող հերոսամարտերը։

Եվ այդ ձայների մեջ լավ է հնչում Եվա Դարբինյանի խոսքը։ Նրա կրակոտ ելույթները շատ բարձր ամբիոններից են լսել։ Սովետական գյուղի երիտասարդ օղակավարուհին միշտ փայլել է իր բանիմացությամբ, նվիրվածությամբ։ Այսօր, երբ հիշում են նրան, ասում են անուն, ազգանունը, չեն մոռանում հիշատակել, որ նա ՀամԼԿԵՄ Կենտկոմի վերստուգիչ հանձնաժողովի անդամ է, Երևանի պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետի ուսանող։

Այո՛, թե տեսնես նրան դաշտում աշխատելիս, կասես՝ ինքն իր հետ է, ինքն իրեն գտել է, թե լսես նրան ամբիոններից խոսելիս, կասես՝ այս աղջկա մասնագիտությունը սա է, իսկ երբ տեսնես խոնարհված գրքերի մեջ, կասես՝ երևի, գիրք կարդալուց բացի ուրիշ բան չգիտի։

Հոկտեմբերյանի շրջանի կոմերիտմիության պայծառ ներկայացուցիչներից է նաև Գեղեցիկ Կարապետյանը։ Ծննդավայր Նալբանդյան գյուղը նրան պաշտում է ծնողի նման։ Հողի արժանավոր դուստրը, երբ ընտրվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, տարբեր հեռագրեր ու շնորհավորանքներ ստացավ, իսկ ամենից թանկը մրցակից՝ Մախարաձեի շրջանի Նաթանների կոլտնտեսությունից էր. «35 տարի մրցում ենք միմյանց հետ։ Մրցությունն ավելի է հարազատացրել մեզ։ Ավելի ենք ձուլվել իրար։ Մեր ամբողջ գյուղը շնորհավորում է քեզ և ասում է՝ դու նաև մեր դեպուտատն ես, մեր դուստրն ես»։ Խանդավառ կոմերիտուհու ձեռքերը մանկուց են սովոր աշխատանքի։ Ու թե լրագրողները գնում են Գեղեցիկի մասին գրելու, հայրը՝ Արտուշը, պատմություններ է պատմում հին գյուղի մասին, հիշում իր պատերազմական երիտասարդությունը, բաժակը լցնում է գինով ու ասում.

— Ոչ միայն իմ Գեղեցիկի, այլ ընդհանրապես մեր գեղեցիկ կյանքի կենացը։

Այս սերնդի դիմանկարը...

Պայծառ ու առատ աշուն է մեր դաշտերում ու լեռներում։ Հողը խոսում է շռայլորեն։ Մաքուր-մաքուր է մեր երկինքը։ Երկնքի խորությունը չափվում է ազատ կյանքի մեջ ծնված երիտասարդ մարդու հայացքով։

Մաքուր, խաղաղ երկինք՝ իջած մեր նորոգ երկրի վրա։

Տոների շղթա, նաև՝ Հայաստանի կոմերիտմիությունը 50 տարեկան է։ Այրական տարիք։ Փորձությունների միջով անցած տարիք։ Եվ Հոկտեմբերյանի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոմերիտական կազմակերպությունն իր բազմահազարանոց ջոկատը, բանակը տանում է նոր գրոհների։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀԱՄԱՀԱՐԹՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ*

Գյուղատնտեսական ձեռնարկությունների, հատկապես կոլտնտեսությունների տնտեսական զարգացման անհավասար հնարավորությունները գոյանում են այն բանի հետևանքով, որ դրանք, գտնվելով բնա-տնտեսական տարբեր պայմաններում, ներդրված աշխատանքի և միջոցների ծախքերի յուրաքանչյուր միավորի դիմաց խիստ տարբեր արդյունք և եկամուտ են ստանում, այստեղից և նրանց վերարտադրության տեմպերը, կուտակման ու սպառման մակարդակները չեն կարող միատեսակ լինել։ Սակայն կոլտնտեսությունների ու սովխոզների եկամտաբերության վրա ազդեցություն են գործում ո՛չ միայն արտադրության բնատնտեսական պայմանների բազմազանությունը, այլև արտադրած արդյունքի իրացման պայմանների տարբերությունները՝ գյուղատնտեսական արտադրանքի մթերումների և մթերման գների համակարգը, եկամտահարկը, շահույթների բաշխումը և այլն։

Առանձնապես մեծ է գների դերը։ Հայտնի է, որ մթերման գները ներկայումս տարբեր չափով են հատուցում գյուղատնտեսական արտադրանքի առանձին տեսակների արտադրության հասարակական ծախքերը (արժեքը), ուստի և ոչ միատեսակ դեր են կատարում տարբեր բնատնտեսական գոտիներում աշխատող կոլտնտեսությունների էկոնոմիկայում։ Համեմատաբար բարենպաստ պայմաններում աշխատող տնտեսությունները գների միջոցով իրացնում են որոշակի հավելուրդային եկամուտներ, այսինքն՝ դիֆերենցիալ ռենտա, այնինչ միջին և, մանավանդ, անբարենպաստ (վատագույն) պայմաններում աշխատողները նորմալ կամ նվազագույն եկամուտներ են իրացնում, հաճախ աշխատում են վնասով։ Համահարթման պրոբլեմն այս պատճառով ունի, այսպես ասած, երկակի բնույթ, երկու կողմ. դրանցից առաջինը առնչվում է համեմատաբար բարենպաստ բնատնտեսական պայմաններում աշխատող տնտեսություններում ստեղծված դիֆերենցիալ հողային ռենտայի բաշխման հետ[1]։ Հարցի երկրորդ կողմն այն է, թե ինչպես ապահովել վերարտա-

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։

1 Տե՛ս այդ մասին մեր հոդվածը «Լենինյան ուղիով» ամսագրի 1969 № 8-ում։ Այստեղ մնում է ավելացնել, որ սոցիալիզմի տնտեսական օրենքները ընդհանուր առմամբ և համահարթման պրոբլեմի լուծումը մասնավորապես չեն պահանջում լիովին վերցնել դիֆերենցիալ ռենտան գյուղատնտեսությունից և լիակատար հավասարեցնել բոլոր գոտիներում աշխատող տնտեսությունների եկամուտները (դա կնշանակեր ոտնահարել նյութական շահագրգռվածության սկզբունքները և արհեստականորեն կխանգարեր գյուղատնտեսության ինտենսիվացմանը)։ Համահարթումը պահանջում է միայն հանրային արտադրության զարգացման հավասար խթաններ ստեղծել բոլոր գոտիներում աշխատող տնտեսությունների համար։

դրության նորմալ հնարավորություններ այն տնտեսություններում, որոնք աշխատում են արտադրության և իրացման վատթարագույն պայմաններում, անհրաժեշտ եկամուտներ չեն ստանում կամ աշխատում են վնասով։ Մեզ մոտ՝ Հայաստանում, գերակշռում է հարցի հենց երկրորդ կողմը, քանի որ գյուղատնտեսական ձեռնարկությունների մեծ մասն աշխատում է բնատնտեսական բավական անբարենպաստ պայմաններում։

Որոշելու համար, թե արդյոք որտեղ և որ դեպքում մենք գործ ունենք հավելուրդային, ռենտային եկամուտների, կամ ընդհակառակը, ցածր եկամտաբեր կամ վնասով աշխատող տնտեսությունների հետ, որոնց պետք է օգնել և ինչպես օգնել, անհրաժեշտ է նախապես պարզել հանրային տնտեսության նորմալ կամ, ինչպես ընդունված է ասել՝ օպտիմալ եկամտաբերության չափի հարցը։ Վերցնենք ամենից առաջ ժողովրդատնտեսական այնպիսի չափանիշ, ինչպիսին է հավելյալ արդյունքի միջին նորման ($\frac{m}{v}$ հարաբերությունը) և հասարակական արտադրության միջին շահութաբերությունը։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հասարակական արդյունքի միջճյուղային հաշվեկշռի տվյալների համաձայն, վերջին տարիներին հավելյալ արդյունքի միջին նորման կազմում է մոտ 89—91 տոկոս, այլ կերպ ասած, նյութական արտադրոլորտում զբաղված աշխատանքի վարձատրության միջոցների յուրաքանչյուր 100 ռուբլուն ընկնում է մոտ 190 ռուբլի նոր ստեղծված արժեք (ազգային եկամուտ)։ Մյուս կողմից, հավելյալ արդյունքի հարաբերությունը հասարակական արտադրության նյութական և աշխատանքային ծախքերի ընդհանուր գումարին, այսինքն $\frac{m}{c+v}$ հարաբերությունը կազմում է 27,7 տոկոս, այդ թվում՝ հասարակական արտադրության երկրորդ ստորաբաժանման գծով, որին մոտ է գյուղատնտեսությունը՝ 39,3 տոկոս[1]։ Դա, ըստ էության, ժողովրդական տնտեսության շահութաբերության ցուցանիշն է։ Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, մեր մի շարք ագրարային-տնտեսագետների հաշվարկները վկայում են, որ կոլտնտեսությունների և սովխոզների օպտիմալ շահութաբերությունը պետք է լինի 40—50 տոկոսի սահմաններում, իսկ վերջին տարիների տվյալներով, կոլտնտեսությունների միջին փաստացի շահութաբերությունը ՍՍՀՄ-ում (զուտ եկամտի հարաբերությունն ընթացիկ ծախքերին) կազմում է 35 տոկոս։

Ի՞նչ վիճակում է այս առումով Հայաստանի կոլտնտեսությունների շահութաբերությունը։ Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ հանրապետության գրեթե բոլոր գյուղատնտեսական գոտիներում, բացի Արարատյան դաշտից, ինչպես կոլտնտեսականների վարձատրությունը, այնպես էլ հանրային տնտեսության շահութաբերությունը զգալիորեն ցածր են օպտիմալ պահանջներից։ Այսպես, եթե մեր կոլտնտեսություններն իրենց անդամներին վարձատրեն մեկ մարդ-օրի միջին հանրապետական հասույթի չափով (որն, ի դեպ, գրեթե համընկնում է սովխոզային վարձատրությանը), ապա այս դեպքում Արարատյան դաշտը կլինի միակ գոտին, որի տնտեսություններն ապահովում են 39 տոկոս շահութաբերություն, Հյուսիս-արևելյան գոտին դրա կեսի չափով (19 տոկոս), մինչդեռ մնացած գոտիների միջին շահութաբերությունը կազմում է 2,4 տոկոս. դա նշանակում է համախառն եկամուտը գրեթե ամ-

[1]. Տե՛ս, «Народное хозяйство СССР в 1960 году», М., 1961, стр. 144. «Народное хозяйство СССР в 1967 году», М., 1968, стр. 112.



բողջովին պետք է հատկացվի սպառման ֆոնդերին, կուտակման համար թողնելով չնչին գումարներ։ Այստեղ առկա է դիֆերենցիալ վնասների գոյացումը, որի մասին խոսեցինք։ Իսկ եթե վերցնենք այնպիսի գոտի, ինչպիսին Սևանի ավազանն է, ապա այստեղ կոլտնտեսականներին սովխոզային մակարդակով վարձատրելու համար ունեցած սեփական համախառն եկամուտը չպետք է բավարարեր և կառաջանային մեծ գումարների բացարձակ վնասներ[1]։

Այստեղից հասկանալի է, որ մեր լեռնային շրջանների տնտեսությունները շատ հեռու են ընդլայնված վերարտադրության համար օպտիմալ և նույնիսկ նվազագույն չափի շահույթներ ունենալուց։ Քանի որ շահույթը (զուտ եկամուտը) կուտակումների միակ աղբյուրն է, ապա դա նշանակում է, որ այդ շրջաններում բացակայում են կուտակման հնարավորությունները։ Բայց իրականում կուտակումները հաճախ այս կամ այն չափով կատարվում են ո՛չ թե զուտ եկամտի, այլ գլխավորապես կոլտնտեսականների վարձատրության ֆոնդի սահմանափակման հաշվին։ Ինչ խոսք, որ կուտակման և սպառման շահերի միջև ծագող այս հարաբերությունը բնավ չի նպաստում հանրային տնտեսության զարգացմանը։

Համահարթման պրոբլեմի լուծումը կապված է երեք կարգի գործոնների ազդեցության՝ գյուղատնտեսական արտադրաուժերի զարգացման, կոլտնտեսային արտադրության և սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացման, և վերջապես, գյուղատնտեսության պլանավորման տնտեսական լծակների կատարելագործման հետ։ Գյուղատնտեսության հետագա զարգացումը, եկամտաբերության ընդհանուր մակարդակի բարձրացումը մեծացնում են տարբեր գոտիներում աշխատող տնտեսությունների վերարտադրության նորմալ պայմանների ստեղծման նյութական հնարավորությունները։ Դրանց օգտագործումը գործնականում ռեալ նշանակություն է ձեռք բերում մանավանդ այն դեպքում, երբ առանձին տնտեսությունների միջոցների մի մասը կենտրոնացվում է միջկոլտնտեսային ֆոնդերում։ Այսուհանդերձ չի կարելի գերագնահատել այս գործոնի դերը համահարթման պրոբլեմի լուծման հարցում։ Առանձին տնտեսագետներ այն տեսակետն են հայտնում, որ կոլտնտեսային արտադրության ինտենսիվացման և մասնագիտացման ընթացքն օբյեկտիվորեն հանգեցնում է տարբեր բնական գոտիներում աշխատող տնտեսությունների տնտեսվարման պայմանների խիստ տարբերությունների աստիճանական համահարթմանը[2]։ Այս տեսակետը, մեր կարծիքով, ճիշտ է միայն կիսով չափ. նրանում անտեսված է, որ գյուղատնտեսության ինտենսիվացման պրոցեսները պարունակում են ո՛չ միայն տնտեսական պայմանների համահարթման, այլև, միաժամանակ, դրա հակառակ տենդենցը, այս ասպարեզում եղած տարբերությունների է՛լ ավելի ուժեղացման տենդենցը։

Այսպես, պրոֆ. Ե. Կարնաուխովայի հաշվարկները վկայում են, որ 50 տարիների ընթացքում մեր երկրի տարբեր շրջանների միջև եղած հողի պտղաբերության տարբերությունները, արտահայտած հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվության տվյալներով, ոչ թե նվազել, այլ ավելի են մեծացել։ Եթե 1909—1913 թթ. հացահատիկի միջին բերքատվությունը երկրի

[1] Տե՛ս «Հայաստանի ժողովրդական տնտեսություն», 1971, № 5, էջ 82։

[2] Տե՛ս сб. «Дифференциальная рента в социалистическом сельском хозяйстве», М.,1959 г., стр. 187—190. Ю. Седышев «Дифференциальная рента и выравнивание экономических условий хозяйствования колхозов», М., 1966, гл. 4—6.

լավագույն և վատագույն շրջանների միջև տարբերվում էր 1,4 ցենտներով կամ 23 տոկոսով, ապա 1963—1966 թթ. այդ տարբերությունն արդեն կազմում էր 9,6 ցենտներ կամ 130 տոկոս։ Ընդ որում, հացահատիկի ամենացածր ելակետային բերքատվությունը բարձրացավ ընդամենը 1,3, իսկ ամենաբարձրը՝ 9,6 ցենտներով։ Հողի դիֆերենցիալ պտղաբերությունը, հետևապես նաև դիֆերենցիալ ռենտան, անկասկած, ավելացան՝ մի շարք շրջաններում գյուղատնտեսության ինտենսիվացման հաշվին[1]։

Պրոֆեսորներ Մ. Բրոնշտեյնի և Լ. Լոգվինովի հետազոտություններից երևում է, որ երկրի տարբեր շրջաններում աշխատող տնտեսությունների միջև մի անգամ առաջացած տնտեսական տարբերությունները փաստորեն ոչ թե մեղմանում են, այլ շարունակ վերարտադրվում և նույնիսկ խորանում։ Ընդ որում, եթե կոլտնտեսականների աշխատանքի վարձատրման ասպարեզում եղած տարբերությունները վերջին տարիներս որոշ չափով մեղմանում, նվազում են, ապա կոլտնտեսությունների կուտակման տեմպերի և ֆոնդազինվածության ասպարեզում եղած տարբերություններն, ընդհակառակը, ուժեղանում են, որը, վերջին հաշվով, ոչ պակաս բացասական նշանակություն և հետևանքներ ունի հանրային տնտեսության վերարտադրության համար, քան վարձատրության մակարդակի տարբերությունները[2]։

Հայաստանի գյուղատնտեսությունն աչքի է ընկնում ինտենսիվության համեմատաբար բարձր մակարդակով, ինչպես միավոր հողատարածության վրա կատարված հասարակական ծախքերի, այնպես էլ ստացվող արդյունքի գումարային արժեքի տեսակետից։ Սակայն դա բնավ չի վերացնում կամ մեղմացնում վերարտադրության տնտեսական պայմանների անհավասարության հաղթահարման հարցը։ Վերջին տարիների տնտեսական ցուցանիշների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ կոլտնտեսությունների եկամտաբերության, կուտակման ու սպառման տեմպերի տարբերությունները հանրապետության տարբեր շրջանների միջև ո՛չ թե մեղմանում, այլ ավելի են սրվում[3]։ Դա է հաստատում Հայաստանի կոլտնտեսությունների տնտեսական ցուցանիշների միջշրջանային տարբերությունների մեր կատարած վերլուծությունը։ Հաշվարկել ենք երեք հիմնական ցուցանիշների՝ համախառն եկամտի, զուտ եկամտի և աշխատանքի վարձատրության գծով միջին քառակուսային շեղումները։ Հաշվարկը կատարել ենք հետևյալ բանաձևով. $\Sigma = \Sigma (X - \bar{X})$, միջին թվաբանական շեղումները որոշելու համար և $\Sigma = \sqrt{\frac{\Sigma (X - X)^2}{n}}$ միջին քառա-

1. Տե՛ս, «Вопросы экономики, 1968, № 8, стр. 94—95.

2. Տե՛ս, М. Л. Бронштейн «Природно-экономические различия и стимулирование колхозного производства», М., 1968, стр. 87—94. Л. Логвинов «Дифференциальная рента и экономика колхозов», М., 1963, гл. 5.

3 Ինչպես նշել ենք մեր նախորդ հոդվածում, 1958—1968 թթ. տասնամյակին վերաբերող նյութերի վերլուծությունը վկայում էր, որ հանրապետության տարբեր գոտիների, մասնավորապես Արարատյան դաշտավայրի և լեռնային գոտիների միջև եղած տարբերությունները (շերտավորումը) տնտեսությունների շահութաբերության, կուտակման և սպառման տեմպերի տեսակետից, չնայած և որոշ չափով մեղմացել էր, սակայն այն հաստատ համոզումն էինք հայտնել, որ դա ժամանակավոր երևույթ է և որ բոլոր հիմքերը կան սպասելու առաջիկայում, հիշյալ տարբերությունների ոչ թե մեղմացման, այլ ուժեղացմանը (տե՛ս «Լենինյան ուղիով» 1969, № 8, էջ 40—41)։



կուսային շեղումները որոշելու համար, որտեղ X տատանվող ցուցանիշի միջին թվաբանականն է հաշվետու ժամանակաշրջանում,

n— հանրապետության շրջանների թիվն է։

Քանի որ շեղումների գործակցի հաշվարկը երկու դեպքում էլ մոտավորապես նույն արդյունքն է ցույց տալիս, բերենք դրանցից միայն մեկը, այն է՝ նշված ցուցանիշների միջին քառակուսային շեղումների աղյուսակը։

Հայաստանի կոլտնտեսությունների համախառն եկամտի, զուտ եկամտի և աշխատանքի վարձատրության միջին շրջանային տատանումները 1965—1970 թթ.*

| | Հողատարածության մեկ հեկտարի հաշվով | | Մեկ մարդ օրվա հաշվով | | |
|---|---|---|---|---|---|
| | Համախառն եկամուտ | Զուտ եկամուտ | Համախառն եկամուտ | Զուտ եկամուտ | Աշխատ. վարձատր. |
| 1965 թ. | | | | | |
| Հանրապետության միջինը (ռուբլիներով) | 163,3 | 26,9 | 3,99 | 0,66 | 3,27 |
| Միջին շրջան. տատանումը (ռուբլիներով) | 178,9 | 28,2 | 1,41 | 0,30 | 1,03 |
| Շեղման գործակից (տոկոսներով) | 109,5 | 104,8 | 35,8 | 45,5 | 31,5 |
| 1970 թ. | | | | | |
| Հանրապետության միջինը (ռուբլիներով) | 212,0 | 35,2 | 5,43 | 0,86 | 4,42 |
| Միջին շրջան. տատանումը (ռուբլիներով) | 231,7 | 60,8 | 8,82 | 0,69 | 1,79 |
| Շեղման գործակից (տոկոսներով) | 109,2 | 172,7 | 162,4 | 80,2 | 40,4 |

Այս թվերից դժվար չէ նկատել հետևյալ բնորոշ տենդենցը. կոլտնտեսությունների համախառն եկամտի միջշրջանային շեղումները մնացել են անփոփոխ։ Փոքր-ինչ այլ է վիճակը աշխատանքի վարձատրության ասպարեզում, միևնույն ժամանակ, զուտ եկամտի մակարդակի տատանումներն ինչպես հողատարածության մեկ հեկտարի, այնպես էլ հանրային տնտեսության մեջ ծախսված յուրաքանչյուր մարդ-օրի հաշվով՝ զգալիորեն մեծացել են։ Եթե նկատի առնենք, որ զուտ եկամտի մեծությամբ են որոշվում հանրային տնտեսության զարգացման հնարավորությունները, ապա կարելի է եզրակացնել, որ անցած տարիների ընթացքում հանրապետության կոլտնտեսությունների վերարտադրության պայմանների միջշրջանային շերտավորումը (անհավասարությունը) ավելի է ուժեղացել։

Ամեն կերպ արագացնելով կոլտնտեսային արտադրության ինտենսիվացման ընթացքը, միաժամանակ չի կարելի հուսալ, որ դրանով աստիճանաբար կլուծվի նաև հավասար պայմանների ստեղծման հարցը։

Կյանքը ցույց է տալիս, որ տնտեսական զարգացման «նորմալ» ընթացքի դեպքում, եթե դրան չմիջամտենք տնտեսական քաղաքականության բոլոր

* Հաշվարկը կատարված է հանրապետության կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների տվյալների հիման վրա։

լծակներով, տարբեր գոտիներում աշխատող տնտեսությունների վերարտադրության պայմանների տարբերությունները վաղը լինելու են ավելի մեծ։

Հայտնի է, որ 1966 թվականից երկրի կոլտնտեսություններում կենսագործվում է աշխատանքի նվազագույն վարձատրության երաշխավորում։ Անցած տարիների փորձը վկայում է, որ մեղանում դեռևս, ցավոք, շատ է այնպիսի կոլտնտեսությունների թիվը, որոնք ի վիճակի չեն նույնիսկ այդ նվազագույն վարձատրությունն ապահովելու՝ սեփական եկամուտների հաշվին, և դիմում են պետբանկին՝ այդ նպատակով հատուկ երկարատև վարկ ստանալու համար։ Հասկանալի է, որ ներկա պայմաններում նման կոլտնտեսությունները, իրենց անդամներին շատ թե քիչ բավարար վարձատրելու դեպքում, այլևս կուտակումներ կատարելու հնարավորություն չեն ունենում։ Այսպես, պետբանկի հայկական գրասենյակի՝ կոլտնտեսությունների վարկավորման բաժնի տվյալներով, կոլտնտեսականների աշխատանքի երաշխիքային վարձատրության կենսագործման կապակցությամբ, հանրապետության կոլտնտեսությունները նվազագույն հատկացումներ են կատարում կապիտալ ներդրումների և մյուս հասարակական ֆոնդերի լրացմանը, ընդ որում, ամեն տարի ավելանում է այն կոլտնտեսությունների թիվը, որոնք առհասարակ ոչ մի հատկացում չեն կատարում կապիտալ ներդրումների ֆոնդին[1]։ Այս առթիվ հետաքրքրական են հետևյալ թվերը.

| | 1966 | 1967 | 1968 | 1970 |
|---|---|---|---|---|
| Կոլտնտեսություններ, որոնք երկարատև վարկ են ստացել երաշխիքային վարձատրության գծով | 212 | 225 | 206 | 225 |
| Կոլտնտեսություններ, որոնք միջոցներ չեն հատկացրել կապիտալ ներդրումներին* | 185 | 227 | 253 | 208 |
| Նույնը՝ տոկոսներով հանրապետության կոլտնտեսությունների ընդհանուր թվի նկատմամբ | 35,2 | 43,3 | 51,1 | 47,2 |

1971 թ. տարեսկզբի վիճակով հանրապետության կոլտնտեսությունները պարտք էին պետբանկին վարձատրության նպատակով վերցրած 25,8 միլիոն ռուբլի։

Ի միջի այլոց բերած թվերը անուղղակի, բայց բավական պերճախոս ցուցադրում են կուտակման և սպառման ֆոնդերի միջև կոլտնտեսային եկամուտների բաշխման նոր սկզբունքի հետևյալ էական առանձնահատկությունը. եթե նախկինում, մինչև 1966 թ., կոլտնտեսությունները առաջնահերթ կարգով սահմանված միջոցներ էին հատկացնում կուտակման ֆոնդերին, անկախ տվյալ տնտեսության եկամտաբերության և նրա անդամների վարձատրության

[1] Տե՛ս «Коммунист» օրաթերթը, Երևան, 25 VII 1969 թ.։

* Ինչպես հետևում է բերած թվերից, այս երկրորդ տողի մեջ մտնող տնտեսությունների թիվը սովորաբար ավելի շատ է, քան առաջին տողինը, հատկապես դա վերաբերում է 1968 թ., երբ վարձատրության գծով պետբանկին պարտք են եղել 206, իսկ կուտակում չեն կատարել 253 տնտեսություն։ Այս տարբերությունը պարզապես խոսում է այն մասին, որ տնտեսությունների մի մասը (253—206=47 տնտեսություն) չնայած և վարձատրության հոգսերը կարողացել է լուծել սեփական եկամուտների հաշվին (առանց վարկի դիմելու), սակայն դրանից հետո, հավանաբար, արդեն սպառել է իր միջոցները և կուտակումներ կատարելու հնարավորություն չի ունեցել։



մակարդակից, ապա այժմ, ընդհակառակը, յուրաքանչյուր տնտեսություն իր
ստացած եկամուտներից առաջին հերթին ապահովում է վարձատրության
նվազագույն չափը, որից հետո միայն, եթե կարող է, կուտակումներ է կա-
տարում։ Բաշխման այս կարգը, իհարկե, ավելի է համապատասխանում վեր-
արտադրության տեսության տարրական պահանջներին (քանի որ նախքան կու-
տակումներ կատարելը յուրաքանչյուր տնտեսություն պետք է հոգ տանի կա-
տարած ծախքերի, այդ թվում՝ աշխատուժի վերարտադրության նորմալ ծախ-
քերի հատուցման մասին) և թույլ է տալիս ավելի ճիշտ զուգակցել կուտակ-
ման և սպառման շահերը կոլտնտեսություններում։ Միաժամանակ չի կարելի
սպասել, որ եկամուտների բաշխման նոր կարգը կամ վերջինիս ցանկացած
փոփոխումն ինքնին կարող է լուծել տնտեսապես թույլ կոլտնտեսությունների
վերարտադրության պրոբլեմները։ Եվ իսկապես, 1968—1969 թթ. հանրապե-
տության կոլտնտեսությունների 47—51 տոկոսը կուտակումների և ընդլայն-
ված վերարտադրության համար սեփական միջոցներ չեն ունեցել, ուստի ա-
վելորդ է խոսել դրանցում կուտակման և սպառման շահերի ճիշտ զուգակցման,
տնտհաշվարկի և շահութաբերության սկզբունքով տնտեսությունը վարելու
մասին։

Գործնականում խոսքը այստեղ վերաբերում է գլխավորապես մեր հանրապետության լեռնային շրջանների կոլտնտեսությունների մեծ մասում ընդլայնված վերարտադրության անհրաժեշտ պայմանների առկայությանը կամ բացակայությանը։ Այդ կոլտնտեսությունների անհրաժեշտ շահութաբերության և կուտակումների հարցը, ըստ էության, վերարտադրության հավասար պայմանների ապահովման պրոբլեմի ամենադժվար, ամենաթույլ օղակն է։ Մենք այստեղ չենք հավակնում սպառիչ պատասխան տալու այս բարդ պրոբլեմին։ Կցանկանայինք միայն շեշտել, որ, մեր կարծիքով, լեռնային տնտեսությունների վերարտադրության դժվարությունները ցայտուն ամփոփվում և դրսևորվում են գլխավոր արտադրամիջոցի՝ հողային ֆոնդերի անբավարար օգտագործման մեջ։

Վերջին 30 տարիների ընթացքում (1940—1970) Հայաստանի գյուղատնտեսության մեջ օգտագործելի հողատարածությունները բոլոր հանդակների գծով կրճատվել են մոտ 700 հազար հեկտարով, այդ թվում վարելահողերը՝ 136 հազարով, արոտավայրերն ու խոտհարքները 581 հազար։ Դրանց մի մասը շրջանառությունից դուրս է եկել կամ հողմահարման հետևանքով, կամ որպես քարքարոտ, ոչ պիտանի հողեր, մինչդեռ մյուս, հիմնական մասը դուրս է գրվել կոլտնտեսությունների ու սովխոզների հաշվեկշիռներից այն զուտ տնտեսական նկատառումներով, որ գյուղատնտեսության պլանավորման և գյուղատնտեսական արդյունքի իրացման ներկայիս պայմաններում այդ հողերի շահագործումը շահութաբեր չէ դրանց վրա աշխատող տնտեսությունների համար։ Ուստի զարմանալի չէ, որ դուրս գրված այդ հողատարածությունները չնայած հաճախ օգտագործվում են, բայց մատնված են լիակատար անուշադրության և որպես արտադրամիջոց ոչ միայն չեն բարելավվում, այլ անընդհատ վատթարանում են։

Սակայն այստեղ հարց կարող է ծագել՝ անհրաժե՞շտ է արդյոք նորմալ կուտակումներ ապահովել նման վատթարագույն հողերի վրա աշխատող տնտեսություններին և, ընդհանրապես, մտածել նման տնտեսություններում ընդլայնված վերարտադրության անհրաժեշտության մասին։

Որոշ տնտեսագետներ բացասաբար են պատասխանում այս հարցին։ Ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինը գտնում է, որ չնայած ընդլայնված վերարտադրությունը հատուկ է ամբողջ գյուղատնտեսության համար, սակայն ամենևին կարիք չկա այդ օրինաչափությունը տարածել նաև ամենավատ հողամասերի վրա. այդտեղ բավական է ապահովել միայն կատարած ծախքերի հատուցում և աշխատանքի նորմալ վարձատրություն, այսինքն, ըստ էության, բավարարվել պարզ վերարտադրության պայմանների ստեղծումով[1]։

Այս տեսակետը բնորոշ է նրանով, որ գրեթե լրիվ համընկնում է այսօրվա մեր իրականության հետ. հայտնի է, որ վատթարագույն պայմաններում աշխատող տնտեսությունները, որպես կանոն, զրկված են շատ թե քիչ նորմալ կուտակումներից և արտադրության ընդլայնման հնարավորություններից։ Դա ճշմարիտ է ոչ միայն մեր գյուղատնտեսության անցած էտապների, այլև զգալի չափով նրա այսօրվա վիճակի համար։

Սակայն արդյո՞ք դա խոսում է վերոհիշյալ տեսության ճշմարիտ լինելու մասին։ Կարծում ենք՝ ոչ։ Տեսության խնդիրը ո՛չ թե մեր տնտեսվարման պրակտիկայի տեսական հիմնավորումն է և դրա թերությունների հավերժացումը (օրինականացումը), այլ այդ պրակտիկայի քննադատական ընկալումը և էկոնոմիկայի զարգացման տենդենցների պարզաբանումը։

Ի՞նչ է նշանակում զրկել վատ պայմաններում աշխատող ձեռնարկությունները զուտ եկամտից և արտադրության ինտենսիվացման, ընդլայնման հնարավորությունից։ (Եթե նկատի առնենք, որ դրա հետ մեկտեղ որոշ տնտեսագետների «տեսությունը» պահանջում է գյուղատնտեսությունից վերցնել համեմատաբար բարենպաստ պայմաններում աշխատող տնտեսությունների ստեղծած ամբողջ ռենտան). Գործնականում դա նշանակում է «զսպել» արտադրությունը, չբավարարված թողնել գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ հասարակական պահանջարկի մի մասը։ Բայց ապրանքային տնտեսության մեջ գործող օրենքների համապատասխան, արտադրանքի մըշտական պակասը պետք է ուղեկցվի գների բարձրացումով, և դա պետք է շարունակվի մինչև այն կետը, որն արդարացնում է ամենավատ պայմաններում արտադրվող արդյունքի վրա կատարած ծախքերը։ Եվ հենց այդ տենդենցն է դրսևորում գյուղատնտեսական արտադրանքի գնագոյացման պրակտիկան վերջին 18 տարիների ընթացքում:

Գներն ավելի ու ավելի են մոտենում արժեքին՝ սա է ներկա ժամանակաշրջանի գնագոյացման հիմնական օրինաչափությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, ապա նշված ժամանակաշրջանն ակնհայտ դարձրեց նաև այն ճշմարտությունը, որ այս ճյուղի արտադրանքի արժեքի և գների հիմքում ընկած են ո՛չ թե միջին, այլ վատթարագույն բնա-տնտեսական պայմաններում կատարվող ծախքերը, որոնք հանդես են գալիս որպես հանրորեն անհրաժեշտ ծախքեր և հատուցվում են հասարակության կողմից[2]։

Այսպիսով, համահարթման պրոբլեմն առնչվում է գյուղատնտեսական արտադրանքի գնագոյացման սկզբունքների և ամենավատ բնա-տնտեսական պայմաններում կատարվող ծախքերի հատուցման հարցին։ Փաստ է, որ այսօր ամենավատ հողերն էլ օգտագործվում են գյուղատնտեսական ապրանքային արտադրանք ստանալու համար, սակայն շատ հաճախ այդ արտադրանքը վարձատրվում է միջին ծախքերի չափով միայն, որը չի կարող բացասաբար չանդրադառնալ հանրային տնտեսության շահութաբերության և դրա զարգացման տեմպերի վրա։ Հասկանալի է, որ այդպես շարունակել չի կարելի։

Երկուսից մեկը. կամ պետք է հրաժարվել վատթարագույն հողերի (կամ դրանց մի մասի) վրա արտադրվող արդյունքի մթերումների և այլ պարտավորությունների պլանավորումից, եթե այն թանկ է, ոչ ձեռնտու հասարակության համար։ Կամ՝ եթե հասարակությանը ձեռնտու է շարունակել նման հողերի օգտագործումը ապրանքային արտադրանք ստանալու նպատակով, այս դեպքում ինչ-որ եղանակով պետք է հատուցվեն դրանց վրա աշխատող տնտեսությունների ծախքերը և նորմալ զուտ եկամուտ, նորմալ կուտակումներ ստեղծվեն այն հաշվով, որպեսզի այդպիսի հողերի օգտագործումը շահութաբեր լինի նաև դրանք օգտագործող տնտեսությունների համար։

Ընդսմին, այս խնդիրը հավանաբար չի կարող լուծվել միայն գների միջոցով, այլ պահանջում է նաև մյուս տնտեսական լծակների, հատկապես, մթերումների պլանավորման, եկամտահարկի, ֆինանսա-վարկային (այդ թվում՝ դոտացիայի) և այլ լծակների ըստ ամենայնի ակտիվ օգտագործումը։

Համարժեքային փոխանակության սկզբունքները պահանջում են ճիշտ որոշել վատթարագույն պայմաններում (մեզ մոտ լեռնային շրջաններում) աշխատող տնտեսությունների համաժողովրդական պարտավորությունների արդարացի չափը, այն անմիջապես խարսխելով հողի տնտեսական գնահատման տվյալների վրա, մյուս կողմից, որոշել նաև հասարակության մասնակցության չափը և ձևերը այդ գոտիների տնտեսություններում վերարտադրության նորմալ պայմանների ապահովման գործում։

Վերադառնալով հանրապետության գյուղատնտեսության շրջանառությունից դուրս գրված այն հողատարածությունների հարցին, որի մասին նշեցինք վերը, պետք է ընդգծել, որ այդ հողերի արմատական բարելավումը հրամայական խնդիր է և, իհարկե, պահանջում է որոշակի հասարակական ներդրումներ, որոնք, մեր կարծիքով, պետք է կատարվեն կենտրոնացված կարգով՝ պետության հաշվին։ Բանն այն չէ, որ այդ հողերի վրա աշխատող տնտեսությունները ի վիճակի չեն կատարել նման ներդրումներ, այլև այն, որ պետությունը ներկայումս միջոցներ չի խնայում գյուղատնտեսության համար։ Մյուս կողմից, դուրս գրված հողերի արմատական բարելավումն այնպիսի խնդիր է, որը հնարավոր է լուծել միայն կենտրոնացված և միասնական միջոցառումների մշակումով ու կիրառումով։ Ընդգծենք նաև, որ առավել կարևոր է ճիշտ տնտեսական-ագրարային քաղաքականություն վարել լեռնային շրջանների վատթարագույն պայմաններում աշխատող տնտեսությունների նկատմամբ. մի շարք տնտեսական, ֆինանսական, վարկային և այլ կարգի արտոնություններ տալ այդ տնտեսություններին, որի նպատակը պետք է լինի, վերջին հաշվով, տնտեսապես խթանել դուրս գրված հողատարածությունների ինտենսիվ օգտագործումը։ Հանրապետության շահերը պահանջում են անել ամեն ինչ, որպեսզի առաջիկա մեկ-երկու հնգամյակի ընթացքում դուրս գրված հսկայական հողատարածությունները վերադարձվեն շրջանառության մեջ որպես լիարժեք հանդակներ։

Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ

1. Տե՛ս, «Вопросы экономики», 1960 г., № 7, стр. 85.

2 Ներկայումս այս սկզբունքին ամենից ավելի են համապատասխանում հացահատիկի, տեխնիկական և մի քանի այլ կուլտուրաների նկատմամբ գործող պետական մթերման գները։

# ՕՐՎԱ հարցեր

## ՄԵՐ ՕՐԵՐԻՆ ՎԱՅԵԼ ԿԱՐԳՈՒԿԱՆՈՆ

Վ. Ս. ԴԱՐԲԻՆՅԱՆ

Հայկական ՍՍՀ Ներքին գործերի մինիստր

Սովետական ժողովրդի շահերը, նրա բարօրության, հոգևոր և կուլտուրական աճի նկատմամբ անսահման հոգատարությունը մեր կուսակցության, նրա լենինյան Կենտկոմի ու սովետական կառավարության գործունեության գերագույն իմաստն են։

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը հետևողականորեն կիրառում են այնպիսի միջոցառումներ, որոնք նպաստում են սոցիալիստական իրավակարգի ու օրինականության ամրապնդմանը, աշխատավորությանը դաստիարակում սովետական օրենքների ու սոցիալիստական համակեցության նորմերի պահպանման ոգով։

«Օրինականության ամրապնդումը»— ասված է կուսակցության համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— միայն պետական ապարատի խնդիրը չէ: Կուսակցական կազմակերպությունները, արհմիությունները, կոմերիտմիությունը պարտավոր են ամեն ինչ անել ապահովելու օրենքների խստիվ կիրառումը, բարելավելու աշխատավորների իրավական դաստիարակությունը: Իրավունքի, օրենքի նկատմամբ հարգանքը պետք է յուրաքանչյուր մարդու անձնական համոզմունքը դառնա: Դա առավել ևս վերաբերում է պաշտոնատար անձանց գործունեությանը:

Անհանդուրժելի են օրենքից նահանջելու կամ այն շրջանցելու փորձերը, թեկուզ ինչով էլ դրանք պատճառաբանվեն: Անհանդուրժելի են նաև անձի իրավունքների խախտումները, քաղաքացիների արժանապատվությանը դիպչելը: Մեզ՝ կոմունիստներիս, ամենամարդասիրական իդեալների կողմնակիցներիս համար դա սկզբունքային հարց է»:

Վերջին մի քանի տարվա ընթացքում երկրում հսկայական աշխատանք է կատարվել սովետական օրենսդրությունը կատարելագործելու ասպարեզում։ Առավել ուշադրություն է նվիրվել այնպիսի խնդիրների օրենսդրական կարգավորմանը, ինչպիսիք են ժողովրդի առողջության պահպանման բարելավումը, ընտանիքի ամրապնդումը, աշխատանքային հարաբերությունների հետագա կատարելագործումը, բնության պահպանության և բնական հարստությունների ռացիոնալ օգտագործման ապահովումը և այլն։

Սովետական օրենսդրությունը կատարելագործելու, միլիցիայի, դատական-դատախազական օրգանների, ուղղիչ աշխատանքային հիմնարկությունների գործունեությունը բարելավելու նպատակով ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը վերջերս կայացրին մի շարք որոշումներ։ Ստեղծվեցին ՍՍՀՄ ներքին գործերի և արդարադատության միութենական-հանրապետական մինիստրություններ։ Կոնկրետ ուղիներ նշվեցին դատապարտվածների դաստիարակությունը բարելավելու, պետության ու ժողովրդի ունեցվածքի պահպանությունն ապահովելու, կաշառակերության, սպեկուլյացիայի, հակահասարակական և պորտաբույծ կյանք վարողների դեմ պայքարն ուժեղացնելու, կալանավայրերից վերադարձածների նկատմամբ վարչական հսկողություն սահմանելու, որոշ դատապարտվածների պայմանական ազատելու, աշխատավորության իրավական դաստիարակության մակարդակը բարձրացնելու և այլ կարևոր խնդիրների արդյունավետ լուծման համար։ Այդպիսով երկրում վերջ տրվեցին հանցագործության դեմ մղվող պայքարում սուբյեկտիվիզմի առկայությունը, վարչա-իրավական միջոցառումների դերն ու նշանակությունը թերագնահատելու դրսևորումներին և քրեական պատժի ծայրահեղություններին։

Ներքին գործերի օրգանների կյանքի ու գործունեության բոլոր բնագավառների համար սկզբունքային նշանակություն ունեցան սովետական վերադաս մարմինների վերջին տարիներին կայացրած կարևոր որոշումները հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու վերաբերյալ, ռեալ նախադրյալներ ստեղծեցին հանցագործության դեմ մղվող պայքարն արմատապես բարելավելու համար։

Կենսագործելով կուսակցության ու կառավարության որոշումները, ներքին գործերի օրգաններն իրենց ուշադրությունը կենտրոնացրին այնպիսի կարևոր խնդիրների լուծման վրա, որպիսիք են՝ կառավարման սիստեմի հետագա կատարելագործումը, հանցագործության դեմ մղվող պայքարի գիտական հիմքերով կազմակերպումը, կադրերի որակական կազմի բարելավումը, պրոֆիլակտիկ աշխատանքի մակարդակի բարձրացումը, պատժի անխուսափելիության ապահովումը և այդ ամենի հիման վրա՝ սոցիալիստական օրինականության ամրապնդումը։

ՍՄԿԿ XXIV համագումարը կառավարման կատարելագործումը համարեց կուսակցության քաղաքականության կարևորագույն, հանգուցային հարցերից մեկը և խնդիր դրեց այն իրականացնել ժողովրդական տնտեսության, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։

Ներքին գործերի մինիստրության սիստեմում անհրաժեշտ մակարդակի վրա չէր հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարը։ Ղեկավարման գրասենյակային ոճը, փոխադարձ ինֆորմացիայի, հանցագործություն ծնող պատճառների ու պայմանների գիտական վերլուծության բացակայությունը բացասաբար էին ազդում վարչական մարմինների գործունեության վրա։ Եվ ահա, կենսագործելով կուսակցության ու կառավարության որոշումները, արմատական բեկում է կատարվել ներքին գործերի համակարգում։ Ստեղծվել են մի շարք գիտա-հետազոտական հիմնարկություններ ու բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Նոր տեխնիկայի, կապի ու

տրանսպորտի ժամանակակից միջոցների առկայությունը նպաստում է հանցագործության դեմ տարվող պայքարը խարսխել գիտական հիմքերի վրա։ Նկատելիորեն բարձրացել է աշխատանքի ստեղծագործական մակարդակը, ուսումնասիրվում են հանցագործությունները ծնող պատճառները։ Հանրապետության ներքին գործերի օրգաններին լուրջ օգնություն է ցույց տալիս մինիստրության սոցիոլոգիական լաբորատորիան։

Կառավարումը կատարելագործելու նպատակով վերջերս բոլոր միութենական հանրապետություններում ստեղծվեցին ներքին գործերի մինիստրությունների շտաբներ, որոնք կոչված են բարձրացնելու գործնական հսկողության, տեսչական ու կոմպլեքսային ստուգումների մակարդակը, ամրապնդելու պետական ու զինվորական կարգապահությունը։

Հանցագործության դեմ պայքարն առավել արդյունավետ ու նպատակային դարձնելու գործում վճռական դերը պատկանում է ներքին գործերի օրգաններին՝ աշխատավորության շահերն ու ունեցվածքը, նրա ստեղծագործ աշխատանքն ու հանգիստը պահպանողներին։ Խնդիր է դրված՝ ներքին գործերի օրգանները համալրել գրագետ, գործը սիրող, համակողմանի զարգացած աշխատակիցներով։

Անցած մի քանի տարիների ընթացքում, անշեղ ընթանալով վերադաս օրգանների ցուցումների կիրառման հունով, ներքին գործերի մինիստրության տեղական մարմինները շոշափելի առաջընթաց են ունեցել. բավականին բան է արվել ՍՍՀՄ ներքին գործերի օրգանների կադրերի որակական կազմը բարելավելու բնագավառում։ Ստեղծվել են բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական նոր ուսումնական հաստատություններ, գիտա-հետազոտական ինստիտուտներ, կարճատև ու երկարամյա վերապատրաստման դասընթացներ։ Այժմ մեր մինիստրության սիստեմի հրամկազմի 98,8 տոկոսն ունի բարձրագույն, թերի բարձրագույն, միջնակարգ մասնագիտական և ընդհանուր միջնակարգ կրթություն. դա գերազանցում է միջին միութենական մակարդակը։ Եթե 1966 թվականին քրեական հետախուզության մարմիններում աշխատողների միայն 21 տոկոսն ուներ բարձրագույն կրթություն, ապա հիմա 64,6 տոկոսը բարձրագույն կրթությամբ մասնագետներ են։ Քննչական ապարատներում բարձրագույն կրթությամբ իրավաբանները կազմում են 92,7 տոկոս։ ԲԽՍՍ ծառայության մեջ տարբեր մասնագիտությամբ բարձրագույն կրթություն ունեցողների թիվը 40-ից հասել է 75 տոկոսի։

Միաժամանակ մինիստրության կոլեգիան, վարչություններն ու բաժինները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարում մեր օղակներում գործարար մթնոլորտ հաստատելու համար։ Այդ ամենը, անշուշտ, դրական ազդեցություն է ունեցել հանցագործության դեմ մղվող պայքարի վրա, նվազում են վտանգավոր հանցագործությունները։ Քրեագիտական համակողմանի վերլուծությունների համեմատ գործելը, գիտության ու տեխնիկայի նորությունների կիրառումը, մեր աշխատանքի ոճի հատկանիշներն են դարձել։

Ձեռք բերված նվաճումներն ակնհայտ են, սակայն դրանք չեն բավարարում այն խնդիրներին, որոնք կուսակցության XXIV համագումարը դրեց ներքին գործերի մինիստրության օրգանների, դատախազության ու դատարանների առջև։

Անդրադառնալով երկրում սովետական իրավակարգն ու սոցիալիստական օրինականությունն ավելի ամրապնդելու հարցին, և բարձր գնահատելով այդ ասպարեզում վարչական օրգանների աշխատանքը, ընկ. Բրեժնևն ասաց.

«Օրենքներով նախատեսված պատժամիջոցները կիրառելու հետ մեկտեղ, մեզանում ավելի ու ավելի հոգատարություն է ցուցաբերվում հանցագործության պրոֆիլակտիկայի, դրանք կանխելու և թույլ չտալու նկատմամբ»։

Մեր հանրապետությունում, չնայած այս ասպարեզում որոշ դրական գործ է կատարված, այնուամենայնիվ, գոհացուցիչ չեն պրոֆիլակտիկ աշխատանքի արդյունքները։ Միլիցիան, ներքին գործերի մյուս օրգանները դեռևս անտարբեր վերաբերմունք են ցույց տալիս իրենց գլխավոր խնդրի՝ հանցագործությունը կանխելու նկատմամբ։

Հանգամանորեն վերլուծելով աշխատանքի այս կարևոր բնագավառը, մինիստրության ղեկավարությունը կիրառել է և առաջիկայում ևս կիրագործի մի շարք կոնկրետ միջոցառումներ, որոնք կնպաստեն հանցագործության ծնող պատճառների խոր ուսումնասիրման, ներքին գործերի օրգանների ուժերի ու հնարավորությունների այնպիսի տեղաբաշխմանն ու օգտագործմանը, որպեսզի պայմաններ ստեղծվեն ժամանակին իրազեկ լինելու մտահղացված հանցագործության յուրաքանչյուր քայլին և թույլ չտալու որպեսզի այն կատարվի։

Զարգացման արդի էտապում, ներքին գործերի օրգանները պարտավոր են խորապես իմանալ կատարվող սոցիալ-տնտեսական վերափոխումների էությունը, կանխել հակահասարակական երևույթները, կատարելագործել աշխատանքի ձևերն ու մեթոդները։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո մինիստրության տեղական օրգանները լայն աշխատանք են ծավալել այդ նպատակով։ Տարեսկզբին հանրապետությունում, մասնավորապես Երևանում տեղի ունեցան առավել վտանգավոր հանցագործության դեպքեր։ Սևեռելով ուշադրությունը դրանց բացահայտման վրա, մեր որոշ օրգաններ ինչ-որ չափով թուլացրին ընդհանուր պայքարը, որը որոշ բնույթի հանցագործությունների տեղիք տվեց։ Սակայն, կարճ ժամանակում դրությունը բարելավվեց, մերկացվեցին ու դատի տրրվեցին կողոպտիչների, գողերի ու այլ կարգի հանցագործների մի քանի խմբակներ։ Անցած տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, արձանագրվեց առավել վտանգավոր հանցագործությունների կրճատում։ Թեև հարկավոր է նշել, որ պայքարը հակահասարակական երևույթների դեմ դարձել է ավելի հետևողական ու գործնական։

Առաջիկա հնգամյակում Հայաստանում բնակչությունը կաճի շուրջ 300 հազարով, կստեղծվեն արդյունաբերական նոր կենտրոններ, կփոխվի առանձին շրջանների տնտեսական դեմքը, կմեծանա գյուղական վայրերից բնակչության միգրացիան դեպի քաղաքներն ու քաղաքատիպ բնակավայրերը, գյուղի կենցաղն ու ապրելակերպն ավելի կնմանվեն քաղաքայինին։ Այս տեղաշարժերը նոր խնդիրներ են առաջադրում մեր օրգաններին։

Բնակելի շինարարության մասշտաբների մեծացումը պահանջում է վրճռական միջոցների դիմել շինանյութերի, շինարարական պարագաների ու մեխանիզմների պահպանությունն ուժեղացնելու, դրանց վատնողների ու յուրացնողների դեմ անխնա պայքար ծավալելու համար։

Կուսակցության վերջին համագումարն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց բնակչության կենցաղային սպասարկման ու առևտրի որակի բարելավմանը։ Դա կյանքի պահանջն է։ Բնակչության կենսամակարդակի ու կուլ-

տուրայի անշեղ աճի տեմպերը պահանջում են կուլտուրական առևտրի ընդլայնում ու կենցաղային բարձրորակ սպասարկում: Հասկանալի է, որ պետք է ընդլայնել առևտրի ու կենցաղային սպասարկման օբյեկտների թիվը: Գաղտնիք չէ, սակայն, որ առևտրի ցանցում դեռևս կան աշխատողներ, որոնք թերակշռում են ու թերաչափում, վաճառում են, այսպես կոչված, «ձախ» ապրանքներ, խախտում են ապրանքների գները, կատարում այլ կարգի հանցագործ ակտեր: Կենցաղային սպասարկման օբյեկտներում ընդունվում են պատվերներ՝ առանց օրինական ձևակերպման, որոշ մարդիկ պետական ունեցվածքի հետ վարվում են այնպես, ինչպես կամենում են:

Օգտվելով առանձին ապրանքների գների փոփոխություններից և գնորդների անգիտությունից, առևտրի ցանցի որոշ աշխատողներ գողում են պետության ու քաղաքացիների գումարները: Հասկանալի է, որ օրինական է աշխատավորների զայրույթը նման մարդկանց և բոլոր նրանց դեմ, ովքեր ապօրինի միջոցներով ձեռք բերելով դեֆիցիտային ապրանքներ, նպաստում են սպեկուլյացիային ու կաշառակերությանը:

Հարկ է նկատել, որ մեր ԲԽՍՍ օրգանները դեռևս անբավարար են պայքարում կանխելու և վերացնելու առևտրի, հասարակական սննդի ու կենցաղային սպասարկման օբյեկտներում կատարվող խախտումներն ու հանցագործությունները: Դեռևս թույլ է պայքարը կաշառակերության ու սպեկուլյացիայի դեմ: Այդ նկատառումով մինիստրությունը միջոցներ է ձեռնարկում բարձրացնելու իր աշխատողների պատասխանատվությունը, գործողությունների վարպետությունը, ամրապնդում սոցիալիստական սեփականության պաշտպանության գործը:

Պետական ու հանրային ունեցվածքի հափշտակումների, վատնումների, կաշառակերության ու սպեկուլյացիայի կանխումն արդյունաբերական, շինարարական օբյեկտներում, առևտրում, կապում ու տրանսպորտում, կոլտնտեսություններում ու սովխոզներում մեր քրեական հետախուզության, ԲԽՍՍ ու քննչական մարմինների, ողջ միլիցիայի սրբազան պարտքն է և մեր բոլոր ջանքերը ուղղված են առաջիկայում առավել բարձրացնելու այդ կարգի հանցագործությունների դեմ մղվող պայքարի արդյունավետությունը:

Հանրապետությունում բացահայտված հանցագործությունների մեջ ակնհայտ տեղ է գրավում խուլիգանությունը: Քաղաքացիների անձի ու ունեցվածքի դեմ կատարվող շատ հանցագործություններ կատարվում են խուլիգանության հողի վրա: Սակայն հարկ է նշել, որ հասարակական կազմակերպությունները և առհասարակ ողջ սովետական հասարակայնությունը, արձագանքելով կառավարական վերադաս օրգանների հրահանգներին, վերջին ժամանակներս, միլիցիայի հետ ձեռք-ձեռքի տված՝ նշանակալի չափով ուժեղացրին պայքարը հակահասարակական, հատկապես խուլիգանական երևույթների դեմ:

Վերլուծությունը ցույց է տալիս, որ վերջին շրջանում փոխվել է խուլիգանության բնույթը: Ավելի շատ դեպքեր են արձանագրվում փակ [illegible]՝ բնակարաններում, հանրակացարաններում, ռեստորաններում ու սրճարաններում: Այդ հանգամանքը միլիցիային պարտավորեցնում է ավելի ամրապնդել կապն ու համագործակցությունը հասարակայնության հետ, միաժամանակ պայքար ծավալել խուլիգանություն ծնող այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են՝ հարբեցողությունը, զազրախոսությունը, ընտանեկան և հարևան-



ների միջև ծագած վեճերը, աղմուկը, համակեցության նորմերի այլ կարգի
խախտումները:

Հանցագործության դեմ պայքարում կարևոր դեր են կատարում ուղղիչ-
աշխատանքային հիմնարկությունները: Մի քանի ամիս առաջ Հայկական
ՍՍՀ գերագույն սովետի սեսիան ընդունեց հանրապետության ուղղիչ աշխա-
տանքային օրենսգիրքը: Վերջերս մեր կուսակցության կենտրոնական կոմի-
տեն ու սովետական կառավարությունը մի շարք միջոցառումներ կիրառեցին
եղած ուղղիչ աշխատանքային օրենսդրությունը կատարելագործելու նպատա-
կով: Այդ ամենի եզրափակիչ էտապն ուղղիչ աշխատանքային օրենսգրքերի
հաստատումն էր միութենական բոլոր հանրապետություններում:

Մեր երկրում ուղղիչ-աշխատանքային քաղաքականության հիմքը դա-
տապարտվածին դաստիարակելն է: Դա կատարվում է նրան հանրօգուտ աշ-
խատանքի ներգրավելու, նրա ուսուցումն ու մասնագիտացումը կազմակեր-
պելու միջոցով: Այժմ հանրապետության ուղղիչ-աշխատանքային հիմնար-
կություններում անհամեմատ ընդլայնվել է սեփական արտադրական բազան,
կառուցվում են և առաջիկայում շահագործման կհանձնվեն նոր արտադրա-
մասեր, տեղադրվում են նոր, կատարելագործված հաստոցներ ու սարքավո-
րումներ: Ուղղիչ-աշխատանքային հիմնարկություններում գործում են մաս-
սայական դպրոցներ ու պրոֆ-տեխնիկական ուսումնարաններ, լայն մասշտաբ-
ների քաղաքական-դաստիարակչական աշխատանք է տարվում դատապարտ-
վածների շրջանում:

Այդ ամենն արվում է, որպեսզի հանցագործը խորապես զգա իր սխա-
լը, ազնիվ աշխատանքով քավի իր մեղքը, ուղղվի ու կանգնի կյանքի ճիշտ
ճանապարհի վրա: Սակայն մեր ուղղիչ աշխատանքային հիմնարկություննե-
րում քիչ չեն դեռևս չլուծված հարցերը. դատապարտվածների որոշ մասը չի
ընդգրկված հանրօգուտ աշխատանքի ոլորտը, առանձին օղակներում քաղա-
քական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը չի համապատասխա-
նում այսօրվա պահանջներին, լինում են պահպանության ռեժիմի ու կարգա-
պահության կանոնների խախտումներ:

Ուղղիչ-աշխատանքային հիմնարկությունների գործունեության չափանի-
շը կրկնահանցագործության կանխումն ու վերացումն է: Ճիշտ է, այդ աս-
պարեզում Միության մեջ մենք համեմատաբար վատ ցուցանիշներ չունենք,
սակայն չի կարելի մոռանալ, որ դեռևս քիչ չէ նրանց թիվը, որոնք ուղղիչ-
աշխատանքային հիմնարկություններից վերադառնալուց հետո վարում են
պորտաբույծ կյանք ու նորից դառնում հանցագործության համար: Մինիս-
տրությունը, նրա ուղղիչ-աշխատանքային հիմնարկությունների վարչությունը
կոնկրետ միջոցներ են ձեռնարկում դատապարտվածների դաստիարակության
գործում եղած թերությունները վերացնելու, այդ բնագավառում գործադրր-
վող ջանքերի արդյունավետությունը բարձրացնելու համար:

Այս հնգամյակում մեծ աճ է ունենալու ավտոմոբիլային արդյունաբերու-
թյունը: Մեր հանրապետությունում ևս կրկնապատկվելու է ավտոմեքենանե-
րի թիվը: Դա ներքին գործերի օրգանների առջև լուրջ ու պատասխանատու
խնդիրներ է հարուցում: Գաղտնիք չէ, որ ավտովթարների պատճառով յուրա-
քանչյուր տարի զոհեր են լինում, խեղվում ու հաշմանդամ են դառնում հարյու-
րավոր քաղաքացիներ: Ճիշտ է, տեխնիկական վիթխարի առաջընթացի մեր դա-
րում ավտովթարների կանխումը դարձել է համաշխարհային պրոբլեմ, սակայն
քիչ չեն նաև այն ռեզերվները, որոնց օգտագործմամբ կարելի է զգալի չափով

կրճատել պատահարները։ Ուղղակի պետք է նշել, որ մեր հանրապետությունում, մասնավորապես Երևանում, ցածր է երթևեկության կուլտուրան, մարդիկ ամենատարբեր ձևերով շրջանցում են գոյություն ունեցող կարգուկանոնը, ղեկի մոտ նստում են խմած վիճակում, արհամարհում են լուսային ազդանշանները և հաճախ անպատիժ մնում։ Մինիստրության պետավտոտեսչության մարմինները դեռևս անբավարար են հսկում ավտոտրանսպորտի երթևեկությունը, վճռական միջոցների չեն դիմում վարորդների շրջանում կարգապահությունը բարձրացնելու համար։ Մեր խնդիրն է՝ արմատապես բարելավել պետավտոտեսչության մարմինների գործունեությունը, այն համալրել ազնիվ ու պարտաճանաչ աշխատողներով, որոնք ունակ են կատարելագործելու ավտոտրանսպորտի գործունեության կառավարումը։

Հանցագործության դեմ պայքարի հաջողության կարևոր պայմանը միլիցիայի, ներքին գործերի բոլոր օրգանների ու հասարակայնության սերտ համագործակցությունն է։ Այն օրգանները, որոնք գործում են հասարակայնության, հասարակական կազմակերպությունների ամենօրյա օգնությամբ ու օժանդակությամբ, հասնում են լուրջ հաջողությունների։

Վերջերս Աբովյանի, Ապարանի, Ամասիայի, Թալինի, Անիի, Արտաշատի, Հոկտեմբերյանի և այլ շրջանների մի շարք գյուղերում կոլտնտեսականների ու սովխոզների բանվոր-ծառայողների ընդհանուր ժողովներում պարտավորություններ ստանձնեցին իրենց բնակավայրերում օրինակելի կարգուկանոն հաստատել։ Միլիցիան, հասարակական կազմակերպությունների հետ միասին պետք է ավելի ընդլայնի ու ծավալի այդ նախաձեռնությունը, օգնի կոլեկտիվներին՝ նրանց խոսքը գործի վերածելու։ Միայն հասարակայնության գործնական օգնությամբ, մեր օրգանները կարող են հասնել պատժի անխուսափելի կիրառմանը։

Դժբախտաբար քիչ չեն փաստերը, երբ այս կամ այն հանցանքը կատարած անձնավորությանը հաջողվում է խույս տալ պատժից, թաքնվել կամ պարզապես փախուստի դիմել։ Նախորդ տարիներում կատարված որոշ հանցագործություններ մնում են չբացահայտված, իսկ մեղապարտները ազատության մեջ են և հնարավոր է, կատարում են նոր հանցագործություն։

Այս հանգամանքը, ինչպես նաև հանցագործություն կատարող անձի նկատմամբ միլիցիայի ու դատաքննչական մյուս օրգանների երբեմն ոչ օբյեկտիվ վերաբերմունքն առանձին անհատների մոտ ստեղծում են անպատժելիության պատրանք և նրանց մղում դեպի հանցագործության։

Մեր խնդիրն է՝ հասարակայնության օգնությամբ փնտրել, գտնել ու պատժել բոլոր նրանց, ովքեր խույս են տվել պատժից, գտնվում են փախուստի մեջ կամ թաքնվել են։ Պատժաչափը սահմանելիս, անհրաժեշտ է մազաչափ անգամ չշեղվել օրենքից։ Այդ է պահանջում սովետական օրենսդրությունը։

Միայն հասարակայնության ամենալայն օգնության ու օժանդակության շնորհիվ մեր օրգանները կարող են կանխել նաև անչափահասների կողմից կատարվող հանցագործությունները։ Պետք է ասել, որ եթե միլիցիայի օրգանները ամրապնդեն կապը աշխատավորական ու մանկավարժական կոլեկտիվների, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների հետ, կարելի է հանցագործ ճանապարհից ետ պահել զգալի թվով պատանիների։ Ներքին գործերի օրգանների կարևորագույն խնդիրն է՝ հանցագործության դեմ պայքարում հենվել աշխատավորական կոլեկտիվների, ժողովրդական կամավոր դրուժինաների, ընկերական դատարանների, թաղային կոմիտեների օգնության վրա, բոլոր միջոցներով բարձրացնել դրանց դերն ու հեղինակությունը։



Կյանքը թելադրում է, որ մեր միլիցիան, մինիստրության սիստեմի բոլոր աշխատողները, իրենց ընդհանուր զարգացածությամբ, ինտելեկտուալ մակարդակով ետ չմնան աշխատավորության ընդհանուր մակարդակից։ Դա պահանջում է ձեռնարկել անհետաձգելի միջոցներ մեր աշխատողների, մասնավորապես շարքային անձնակազմի հանրակրթական ու մասնագիտական մակարդակը, նրանց օպերատիվ վարպետությունը բարձրացնելու համար։

ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցական կազմակերպությունների գըլխավոր խնդիրներից մեկը համարեց նոր մարդու դաստիարակությունը։ Կոմունիզմ կառուցող մեր երկրի քաղաքացին իսկական կոմունիստական վերաբերմունք պետք է ունենա աշխատանքի նկատմամբ։ Մեր մարդկանց հարաբերություններում, ընտանիքում ու կենցաղում պետք է իշխեն ազնվությունն ու անկեղծությունը, պարզությունն ու շիտակությունը։

Համագումարի այդ պահանջն առավել չափով վերաբերում է միլիցիային, ներքին գործերի օրգանների բոլոր աշխատողներին։ Մեր օրգանների կուսակցական կազմակերպությունները, քաղաքական մարմինները կոչված են քաղաքական-դաստիարակչական ողջ աշխատանքը վերակառուցելու համագումարի պահանջների ոգով։

Գաղտնիք չէ, որ մեր օրգաններում դեռևս կան առանձին աշխատողներ, որոնք չեն գիտակցում իրենց պարտքը պետության ու ժողովրդի հանդեպ, անպատասխանատու կերպով ձգձգում են գործը, շեղվում են օրենքից, կատարում են կոպիտ սխալներ։ Այդպիսի մարդկանց դաստիարակությունը մեր կարևորագույն խնդիրն է։ Պետք է հասնել այն բանին, որ մեկընդմիշտ բարձրացվի միլիցիայի կուլտուրան, որ մեր օրգանների աշխատակիցը լինի աշխատավորության իսկական բարեկամն ու խորհրդականը, որ նա ունենա ջերմ սիրտ, լինի կարեկից, բայց միաժամանակ, անողոք դեպի այն ամենը, ինչը խանգարում ու անհանգստացնում է սխրանքների սովոր մեր աշխատավորությանը։ Մեր օրգաններում չպետք է լինեն այնպիսի մարդիկ, ովքեր ինչ-որ չափով կարող են շրջանցել օրենքը, արհամարհել սովետական մարդկանց իրավունքն ու արժանապատվությունը։

Սովետական միլիցիայի, ներքին գործերի բոլոր օրգանների սրբազան պարտքն է՝ ավելի ամրապնդել իրավակարգն ու սոցիալիստական օրինականությունը, հավատարմորեն պահպանել մեր մարդկանց ստեղծագործ աշխատանքն ու հանգիստը, սովետական քաղաքացիների, պետության ու ժողովրդի ունեցվածքը։

Կասկածից վեր է, որ Հայաստանի ներքին գործերի օրգանները, հասարակայնության, հասարակական կազմակերպությունների հետ սերտ համագործակցությամբ, իրենց ողջ ուժերն ու եռանդը կնվիրաբերեն ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործմանը, ամեն ինչ կանեն մեր քաղաքներում ու գյուղերում այնպիսի կարգուկանոնի հաստատման համար, որն առավել չափով կնպաստի կուսակցության մեծ կանխագծումների իրականացմանը։



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԷՋԵՐ Ե. Դ. ՍՏԱՍՈՎԱՅԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԻՑ

ՌՍԴԲԿ VI համառուսաստանյան կոնֆերանսը, որն անցավ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ Պրագայում, 1912 թ. հունվարի 5-ից մինչև 17-ը[1], հաջողությամբ ավարտեց իր նիստերը: Կոնֆերանսի որոշումների մասին Վ. Ի. Լենինը 1912 թ. Փարիզից Կապրի (Իտալիա) կղզում գտնվող Ա. Մ. Գորկուն գրում էր. «Թանկագին Ա. Մ.: Շուտով Ձեզ կուղարկենք կոնֆերանսի որոշումները: Վերջապես հաջողվեց— հակառակ լիկվիդատորական սրիկաների— վերածնել կուսակցությունը և նրա Կենտրոնական Կոմիտեն. Հուսով եմ, Դուք այս առթիվ կուրախանաք մեզ հետ միասին...» (Երկեր, հատ. 35, էջ 1):

Իր **Կյանքի և պայքարի էջեր** գրքում Ե. Դ. Ստասովան գրել է. «Առաջին իսկ հանդիպմանը (Թիֆլիսում— Վ. Է.) պատմելով կոնֆերանսի գործունեության մասին, Պրագայից ժամանած Սպանդարյանը (նոր ընտրված Կենտկոմի անդամ— Վ. Է.) ինձ հաղորդեց. «Ես Ձեզ լավություն եմ արել. Ձեզ ընտրել եմ Կենտկոմի անդամության թեկնածու և նշանակել Կենտկոմի ռուսական բյուրոյի քարտուղար: Այդ պահից ի վեր և մինչև իմ ձերբակալությունը ես տարել եմ այդ պարտականությունը» (Страницы. Жизни и борьбы, М. 1957, стр. 66):

1913 թ. մայիսի 2—4-ը Թիֆլիսի դատական ատյանը քննեց ամբաստանյալներ Ս. Ս. Սպանդարյանի, Ե. Դ. Ստասովայի, Վ. Լ. Շվեյցերի, Ն. Պ. Վոխմինայի, Վ. Ա. Խաչատուրյանի, Ա. Ս. Հովսյանցի գործը և դատապարտեց նրանց ցմահ աքսորի Ենիսեյսկի նահանգը՝ զրկելով բոլոր իրավունքներից: Նրանք մեղադրվում էին 1911 թ. ընթացքում և 1912 թ. առաջին կեսին ՌՍԴԲԿ-ի Թիֆլիսի կազմակերպություն ստեղծելու, նրա բոլոր գործողությունները գլխավորելու, ագիտացիոն աշխատանք տանելու և անլեգալ գրականություն տարածելու միջոցով կուսակցության ուսմունքը պրոպագանդելու համար[2]:

Բոլոր իրավունքներից ու պայմաններից զրկված Սպանդարյանին, Վոխմինային, Շվեյցերին, Խաչատուրյանին դատից հետո մոտ 5 ամիս պահեցին բանտում, իսկ Ստասովային և Հովսյանցին՝ մինչև 1913 թ. նոյեմբերի 25-ը: Էտապ գնալուց առաջ Սուրեն Սպանդարյանն Օլգա Վյաչեսլավովնային (կնոջը) գրում էր. «Երբ ես մեկնեմ, դու մի մոռանա Ելենա Դմիտրևնային, այցելիր նրան և նրա մասին գրիր ինձ ամեն ինչ և մանրամասն» (Ս. Սպանդարյան, Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր,, Երևան, 1939, էջ 329):

1913 թ. նոյեմբերի 27-ին Պետերբուրգից (ուր ապրում էին Ելենա Դմիտրևնայի ծնողները) նրա հայրը՝ Ս. Պետերբուրգի դատական ատյանին առընթեր երդվյալ հավատարմատարների խորհրդի նախագահ Դ. Վ. Ստասովը, միջնորդությամբ դիմեց Արևելյան Սիբիրի գեներալ-նահանգապետ Լ. Կնյազևին. «...Իմ խնդրանքն այն է, որ իմ դուստրն ուղարկվի ընդհանրապես հաղորդակցության ճանապարհներից ոչ հեռու բնակավայրը, և որտեղ նա կարողանա օգտվել բժշկական օգնությունից»[1]:

Կրասնոյարսկ տանող ճանապարհին Ե. Դ. Ստասովան հանդիպեց բոլշևիկներ Ի. Ի. Շըվարցին, որին նա գիտեր Պրագայի VI կոնֆերանսի հրավիրման կապակցությամբ ՌԿԿ-ում (Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողովում) տարած համատեղ աշխատանքից, Ա. Վ. Տրուբինին, Մ. Ն. Չերեպանովին, Մ. Դ. Կրետովին և ուրիշների:

Ե. Դ. Ստասովան Կրասնոյարսկի առաքաբանտը ժամանեց 1913 թ. դեկտեմբերի 19-ին և իր խնդրանքով բնակեցվեց Կանսկի գավառի Ռիբինսկոյե գյուղում, որը հեռու չէր Ինոկենտևկա գյուղից՝ Սուրեն Սպանդարյանի աքսորավայրից:

1914 թ. հունվարի 9-ին Ռիբինսկոյե ժամանելուն պես՝ Ե. Դ. Ստասովան հյուր եղավ Սուրեն Սպանդարյանին և Ն. Պ. Վոխմինային, որը բնակեցվել էր Պերով գավառակի Պերովո գյուղում: Թե ինչպես ինքը հասավ աքսորավայր և բնակություն հաստատեց, Ե. Դ. Ստասովան 1914 թ. հունվարի 31-ին գրել է Տոմսկի նահանգի Նարիմ քաղաքում գտնվող Լ. Պ. Սերեբրյակովին. «Թանկագին Լեոնիդ Պետրովիչ: Այժմ իմ մասին հերթով կպատմեմ ամեն ինչ: Իհարկե, մենք բոլորս Կրասնոյարսկ հասանք հիանալի: Մեկ օր անց պապաշային և ամբողջ կոմպանիան ճանապարհեցինք Իրկուտսկ, բայց նախապես կարողացանք մի լավ հրաժեշտ տալ նրանց: Նստեցինք մինչև ծննդյան տոնի առաջին օրը առանց առանձին հրադարձությունների, եթե չհաշվենք, որ իմ մասին խիստ մտահոգվում էին, բանտային տեսչությունից թույլթ ստանալով, որ ինձ համար ավելի շատ հարմարություններ ստեղծեն: Իհարկե, ես դրանից օգտվում էի հանուն ընդհանուր շահերի: Այդ թղթի հետևանքն այն եղավ, որ ինձ կանչեցին պետի մոտ. նա ինձ հայտնեց, թե ինձ համար նշանակված է Մինուսինսկի գավառը: Ես, իհարկե, բողոքեցի, քանի որ ամենևին էլ չէի ցանկանում ընկնել այդ աստվածավախ գավառը՝ մռայլ և հիվանդոտ մարդկանցով, չէի էլ ուզում կտրվել ընկերներից: Ծննդյան առաջին օրը մեզ մոտ եկավ բանտային տեսուչը, որին խնդրեցի փոխել իմ նշանակման վայրը, քանի որ Մինուսինսկի գավառը աշնանն ու գարնանը բոլորովին կտրված է լինում աշխարհից, այսինքն՝ հենց այն ժամանակ, երբ ինձ առանձնապես հարկավոր է բժշկական օգնություն թոքերիս համար, և խնդրեցի այդ վայրը փոխել Կանսկի գավառով: Այդ ինձ խոստացան, թեև ոչ բոլորովին որոշակի, որովհետև Կնյազևն ինքն էր ինձ համար նշանակել Մինուսինսկի գավառը: Հովսյանցին նշանակեցին Ագինսկի, իսկ Կրետովին՝ Պերովի գավառակը: Նշանակում ստացանք նաև ես ու Մարիա Չերեպանովան՝ հենց Կանսկի գավառի Ռիբինսկոյե գյուղը, և մեզ հետ ուղարկեցին նաև Իսակին (Շվարց) և Անյային (Տրուբինա), իսկ այնտեղից երկուսին էլ ուղարկեցին Շալաևսկ գավառակը: Մարուսյայի հետ միասին այստեղ հասանք հունվարի 9-ին: Նա համարյա թե իսկույն տեղավորվեց, որովհետև նրա հետ միասին եկել էր նաև իր ամուսինը, իսկ ես մի 5 օր մնացի ընկերների մոտ, իսկ այնուհետև տեղափոխվեցի առանձին սենյակ: Ես տեսա նաև Տիմոֆեին (Սպանդարյանին), նա ինձ չխոստովանեց, բայց տեսնում եմ, որ գյուղում կյանքից թախծում է: Ես բավականին շատ հին թերթեր ու հանդեսներ եմ կարդում և դա իմ գլխավոր զբաղմունքն է, թեև ավելի շատ կենդանի գործ կա, բայց դրա մասին մի ուրիշ անգամ...»[2]:

Աքսորյալ բոլշևիկներին տարբեր, սակավաբնակ վայրեր արտաքսելու միջոցով նրանց Ռուսաստանի բանվորական շարժման կենտրոններից կտրելու և անջատելու ցարական իշխանությունների մտադրությունները հաջողությամբ չպսակվեցին: Կոմունիստական կուսակցության ականավոր գործիչ, Լենինի զինակից, փորձված ընդհատակային Ե. Դ. Ստասովան շատ շուտ վերականգնեց կապերը Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի, Պետերբուրգի, Անդրկովկասի և այլ բոլշևիկյան կազմակերպությունների հետ, որոնք կանոնավոր կուսակցական գրականություն էին ուղարկում նրան:

Ե. Դ. Ստասովան, որպես ՌՍԴԲԿ Կենտկոմի

---

[1] *Բոլոր թվականները տրվում են հին տոմարով:*

[2] ЦГА Груз. ССР, ф. 31, с. д. 82, лл. 113—114.

[1]. Госархив Красноярского края, ф. 595, оп. 69, д. 1135, л. 4.

[2]. ГАКК, Ф. 827, оп. 1, д. 349, л. 193.

անդամության թեկնածու, սիբիրյան գյուղում շարունակում էր կուսակցական գործունեությունը: Նա շատ բան էր անում քաղաքական աքսորյալներին համախմբելու համար, օգտագործում էր ամեն տեսակ հնարքներ, կապեր էր հաստատում նրանց հետ, լայն նամակագրություն էր պահպանում և ժամանակ առ ժամանակ կազմակերպում էր հանդիպումներ, որոնցից մեկի ժամանակ Սուրեն Սպանդարյանի օգնությամբ կազմակերպվեց «Տասներեքի կոմիտե», որը բարձր գնահատվեց Լենինի և Կրուպսկայայի կողմից: Ն. Կ. Կրուպսկայան 1914 թ. փետրվարին Ե. Դ. Ստասովային ուղղած նամակում գրում էր. «Ամեն կերպ ողջունում ենք տասներեքի նախաձեռնությունը և ողջույն ենք հղում» (Г. Арутюнов, Л. Тер-Мкртчян, Жизнь и деятельность С. Спандаряна, М., 1958, стр. 53):

Սուրեն Սպանդարյանի և Ե. Ստասովայի հերթական հանդիպումը, որին մասնակցում էին Ի. Շվարցը և ուրիշներ, կայացավ 1914 թ. փետրվարի 6-ին Կանսկի գավառի գավառակներից մեկում: Հենց այդ ժամանակ Սուրեն Սպանդարյանի նախաձեռնությամբ «Голос правды» թերթի խմբագրությանը (այդ անունով էր այդ ժամանակ լույս տեսնում «Правда»-ն) գրվեց մի նամակ, որի մեջ հեղինակները ողջունեցին «6-յակի», այսինքն՝ IV Պետական դումայի բոլշևիկյան դեպուտատներ Պետրովսկու, Բադաևի, Մուրանովի, Սամոյլովի, Շագովի և Մալինովսկու (որը, ինչպես պարզվեց հետագայում, պրովոկատոր էր) գործունեությունը Չխեիձեի գլխավորած 7 լիկվիդատոր դեպուտատների համաձայնողական քաղաքականության դեմ: «Մենք ջերմորեն ողջունում ենք 6 բանվ. ս.—դ. դեպուտատներին այն բանի համար, որ նրանք իրենց դժվարին և պատասխանատու պոստում հաստատապես, համարձակ և հետևողականորեն պաշտպանում են բանվորական սոցիալ-դեմոկրատիայի մարքսիստական սկզբունքները...»[1]:

Բոլշևիկյան կուսակցությունը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ պատրաստվում էր իր հերթական համագումարին, որի հրավիրումը ենթադրվում էր հարմարեցնել 1914 թ. օգոստոսին Վիեննայում կայանալիք Միջազգային սոցիալիստական կոնգրեսի բացմանը: Այդ նպատակով միջոցներ էին ձեռնարկվել կազմակերպելու ՌՍԴԲԿ Կենտկոմի անդամներ Ս. Ս. Սպանդարյանի, Յա. Մ. Սվերդլովի, Ի. Վ. Ջուղաշվիլու (Ստալինի) փախուստը աքսորավայրից[2]: ՌՍԴԲԿ Կենտկոմը աշխատանք գտավ նաև Ե. Դ. Ստասովայի համար: Այդ է վկայում հետևյալ փաստը: Ս. Պետերբուրգի հասարակական անվտանգության և կարգի պահպանության պետը 1914 թ. հունիսի 14-ին գրում էր Ենիսեյսկի նահանգային ժանդարմական վարչության (ЕГЖУ) պետին. «Նկատի ունենալով ՌՍԴԲԿ բոլշևիկների առաջիկա համագումարը և միջազգային սոցիալիստական կոնգրեսը, որոնք պահանջում են տեղերում նախապես տրամադրություններ բարձրացնել՝ համապատասխան պատգամավորներ ընտրելու և հաշվի առնելով բանվոր պրոպագանդայի համար կուսակցական աշխատողների պակասը տեղերում, նշված կուսակցության պարագլուխները ձեռնամուխ են եղել ագիտացիոն գրականության՝ 1905—07 թվականներին ինքնակամ հրատարակած հանցավոր և միտումնավոր գրքերի, բրոշյուրների փութաջան առաքումներին Ս. Պետերբուրգից գավառները:

Սկզբում այդպիսի գրականություն գավառները՝ իր բաժանորդներին էր առաքում Ս.—Պետերբուրգում լեգալ հրատարակվող՝ «Правда», մերթ «Путь правды» կոչվող, և այժմ «Трудовая правда» անունը կրող բոլշևիկյան լեգալ օրգանի խմբագրությունը, իսկ վերջին ժամանակները խմբագրությունն սկսել է հասցեները ու գավառից ստացվող պատվերները հանձնել «Правда» գրապահոցին:

«Правда» գրապահոցի ձեռագիր փաստաթղթերի զննումից պարզվեց, որ այդպիսի գրականություն է ուղարկված Ձեր հսկողությանը վստահված նահանգը՝ հետևյալ հասցեներով

1. Ենիս. նահանգ. Կան. գավառ, Ռիբինսկոյե գյուղ՝ Ելենա Դմիտրիևնա Ստասովային:

2. Գրիգորևկա, Ենիս. նահանգ, Ուսինսկի ճանապարհի վարչություն, Ա. Ի. Պլոտնիկովին...»[3]:

1914 թ. հունիսի 25-ին առավոտյան ժամը 7-ին ռոտմիստր Ժելեզնյակովը Ե. Դ. Ստասովայի բնակարանում խուզարկություն կատարեց, որի ընթացքում հայտաբերվեցին «Правда», «Путь правды», «Трудовая правда», «Рабочий», «Северный рабочий», «Новая рабочая газета» թերթերը, Մարքսի **Կապիտալը** և այլ լեգալ ու անլեգալ գրականություն[4]: Խուզարկության ընթացքում, առգրավված մյուս նամակների թվում գտնվել է նաև Մ. Վ. Վոխմինա-Կորոստիլյովային հասցեագրված մի նամակ: 1914 թ. սկզբին

1. ГАКК, ф, 827, оп. 1, д. 2009, л. 28.
2 Նույն տեղը, գ. 348, թ. 51:
3. ГАКК, ф. 595, оп. 69, д. 1135, л. 20.
4. ГАКК, ф. 827, оп. 1, д. 177, л. 81.



Մարիա Պետրովնան ամուսնացավ աքսորյալ բոլշևիկ Ն. Ի. Կորոստիլյովի հետ, որը հետագայում դարձավ Կանսկի բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների միացյալ սովետի առաջին նախագահը: Հարսանիքին որպես պատվավոր հյուրեր մասնակցեցին Մարիա Պետրովնայի մտերիմներ Ե. Ստասովան և Ս. Սպանդարյանը: Նամակն սկսվում էր այսպես. «1914—24/6. Թանկագին Մարուսյա: Այս նամակը քեզ կհանձնի նամակատարը, որը Ռիբինսկոյեից փոխադրվում է Ձեզ մոտ՝ Պերովսկոյե: Նա, կարծեմ, յուրաքանչյուր շաբաթ երկու անգամ փոստը տանելու համար գալու է մեզ մոտ՝ Ռիբինսկոյե և միշտ էլ կարող ես նրա հետ ուղարկել ինչ որ հարկավոր է... Ես այժմ շաբաթական 38 ժամ դաս ունեմ, առավոտյան ժամը 8-ից մինչև ցերեկվա ժամը մեկը ամեն օր զբաղված եմ, երեքշաբթի և հինգշաբթի՝ դարձյալ ժամը 3—4-ից և շաբաթական երեք օր (երկուշաբթի, չորեքշաբթի և շաբաթ) նաև երեկոները: Այժմյան դասերից ինձ առայժմ բավարարում է Սոլովյովայի հետ տարվող դասերը. նա շատ գիտակցաբար և խոր է վերաբերում պարապմունքներին և, թվում է, ինձ հաջողվել է նրա հոգում լավ զգացմունքներ առաջացնել: Նա լրջմիտ է դարձել և գիտակցաբար է վերաբերում իր՝ որպես ուսուցչուհու, պարտականություններին և, հավանաբար, ինքն ավելի շատ է աշխատելու: Այս ժամանակի ընթացքում սկզբունքային հողի վրա շատ մեծ վեճ է տեղի ունեցել Իվ. Իվ. (Պանկրատովի) հետ: Ներկայումս դա ինձ հատկապես դիպչում է, որովհետև ես գիտեմ, թե ինչ ճանապարհով պետք է գնամ, գիտեմ, որ հարկավոր է խորապես և հիմնովին ուսումնասիրել հակառակորդներին՝ նրանց դեմ բոլոր հարցերում պայքարելու հնարավորություն ունենալու համար: Ուստի, ես իմ բոլոր ազատ ժամանակը տրամադրում եմ կուսակցական գրականության ընթերցանությանը: Բայց քանի որ ետ չմնալու համար հարկավոր է հետևել կյանքին և ամեն ինչ լուսաբանել սեփական տեսակետով, ուստի ընթերցում եմ հաստափոր ժուռնալները: Ես ժամանակ քիչ ունեմ, թեև քնում եմ 6 ժամ և հիմա դրան ընտելացել եմ:

Թիֆլիսից ոչ մի լուր չունեմ, եթե չհաշվենք Օլգա Վյաչեսլավովնայի նամակը, որ կպահեմ մինչև քո գալը: Օ. Վ. (Օլգա Վյաչեսլավովնան) գրում է, թե Կապանը (ՌՍԴԲԿ Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության անդամներից մեկը— (Վ. Է.) ձերբակալված է, և ըստ երևույթին, նրան արտաքսում է սպասում դեպի Հյուսիս: Դա վշտալի է: Գիտես, ես սկսում եմ ինձ զգալ ինչպես Թիֆլիսում, երբ բոլոր ուժերդ նվիրում էիր աշխատանքին և քեզ համար ժամանակ չէիր ունենում: Իսկ ես ինչպես եմ ուզում կենդանի, իսկական գործ, և ինչքան ցավալի է, երբ մտածում եմ, թե ինչ որ մի որոշ չափով ես հիմա «նախկին» մարդ եմ, քանի որ շարքի մեջ չեմ այն պահին, երբ այնքան ուժեր են հարկավոր և, հատկապես, այնպիսի ուժեր, որոնք չեն տատանվում և չեն տարակուսում, այլ հաստատապես կանգնած են որոշակի տեսակետի վրա:

Վերջին գրականությունից իմ ուշադրությունը շատ հիմնավորապես կենտրոնացավ «Рабочий»-ի երկուշաբթվա №-ի վրա, որ նվիրված է միասնության և համագումարի հարցին: Ես կարծում եմ, որ այնտեղ արտահայտվել են որոշ դրույթներ, որոնց հետ ոչ մի կերպ չեմ կարող համաձայնել: Արդյոք հիշում ես դու մեր խոսակցությունը Սուրենի (Սպանդարանի) և մյուս ընկերների, այդ թվում Կոբայի (Ստալինի) հետ՝ 1912 թ. հունվարյան կոնֆերանսում լիկվիդատորների վերաբերմամբ ընդունված բանաձևի առթիվ:

Ուրախ եմ, որ Միխայիլը (Ն. Ի. Կորոստիլյովի կեղծանունը— Վ. Է.) այդպես ինտենսիվ է ապրում, բայց գտնում եմ, որ ապրել միայն սոսկ կենցաղի ուրախությամբ և կյանքի ֆիզիկական գեղեցկության հաճույքով, և այն էլ Ռուսաստանի համար այսպիսի լուրջ պահի՝ չի կարելի... Դե, չէ՛ որ դա միայն իմ կարծիքն է և ուրիշ ոչինչ, և այն, իհարկե, ոչ ոքի համար պարտադիր չէ: Առ այժմ ցտեսություն...»[1]:

1914 թ. հուլիսի 2-ին Ենիսեյսկի պարոն նահանգապետի հրամանով Կանսկի գավառային ոստիկանապետը Ե. Դ. Ստասովային ձերբակալեց Տուրուխանսկի երկրամաս ուղարկելու համար, «որպեսզի նա մեկուսացվի Ռիբինսկոյե գյուղի բնակչությունից, որի նկատմամբ նա այնքան ուժեղ և վնասակար ազդեցություն է ձեռք բերել»[2]:

1914 թ. հուլիսի 8-ին Ե. Դ. Ստասովան Կրասնոյարսկի առաքարանից նահանգապետին դիմեց հետևյալ խնդրանքով. «Կանացի հիվանդության հետևանքով մշտական բժշկական օգնության կարիք ունեմ, խնդրում եմ թույլատրել ինձ վերադառնալ Կանսկի գավառի Ռիբինսկոյե գյուղը, ուր կա բժիշկ և հիվանդանոց»[3]:

1. ГАКК, ф. 827, оп. 1, д. 1362, лл. 55—57.
2. ГАКК, ф. 595, оп. 69, д. 1135, л. 13.
3 Նույն տեղը, թ. 16:

Ե. Դ. Ստասովայի նախատագրով հետաքըրքրվում էր նաև Սուրեն Սպանդարյանը: Տուրուխանսկի երկրամասից, որտեղ նա արտաքսված էր ոստիկանության հսկողությամբ և գտնվում էր Մոնաստիրսկ գյուղում, Ս. Սպանդարյանը 1914 թ. հուլիսի 25-ին գրում էր Օլգա Վյաչեսլավովնային. «Ելենա Դմիտրիևնային նույնպես ձերբակալել են և ուղարկում են այստեղ: Ըստ երևույթին մեզ բախտ է վիճակված իրարից չբաժանվել: Այստեղ արդեն ստացվել են նրան վերաբերող փաստաթղթերը» (Ս. Սպանդարյան. **Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր,** Երևան, 1939, էջ 336):

Ենիսեյսկի նահանգապետը Ե. Դ. Ստասովային թույլատրեց Տուրուխանսկի երկրամասի փոխարեն բնակություն հաստատել Մինուսինսկի գավառի Բեյսկ գյուղում, ուր նա մեկնեց 1914 թ. հուլիսի 30-ին: Բեյսկ գյուղում Ե. Դ. Ստասովան Ենիսեյսկի նահանգի ժանդարմական վարչության պետին դիմեց հետևյալ խնդրանքով. «Սույն հունիսի 25-ին Կանսկի գավառի Ռիբինսկոյե գյուղում ռոտմիստր Ժելեզնյակովը խուզարկություն կատարեց ինձ մոտ, ընդ որում, առգրավվեցին նամակներ, տետր, հանդեսներ և 18 գիրք (ինչպես նշված է խուզարկության արձանագրության մեջ): Ներկայումս պրիստավ պ-րն Ստանովի միջոցով ինձ վերադարձվել են նամակները, տետրը, «Вопросы страхования» հանդեսը և Կ. Մարքսի երկերի III հատորը (2 գիրք) գերմաներեն լեզվով: Բացի այդ գրքերից ինձնից նաև վերցվել էին՝ Կ. Մարքսի երկերի II հատորը ռուսերեն, ինքնակրթության ծրագիրը, Թեյլորի **Արդյունաբերական ձեռնարկությունների կազմակերպման գիտական հիմքերը** երկը և մի ամբողջ շարք բրոշյուրներ ապահովագրության վերաբերյալ: Նկատի ունենալով, որ վերոհիշյալ բոլոր գրքերը լեգալ են և ես անարգել դուրս եմ գրել Պետրոգրադ քաղաքի գրախանութներից, խնդրում եմ Ձերդ գերազանցությանը ինձ վերադարձնել այդ գրքերը»[1]:

Առաջին համաշխարհային պատերազմն ընկըրկվելու լուրը շուտով հասավ Ենիսեյսկի նահանգի աքսորյալներին: Աքսորավայրերում բանավեճեր ծագեցին սկսված պատերազմի վերաբերյալ, որոնց ընթացքում Ե. Դ. Ստասովան պաշտպանում էր ինտերնացիոնալ տեսակետ, իսկ ավելի ուշ, պատերազմի վերաբերյալ լենինյան թեզիսներն ստացվելուց հետո՝ Վ. Ի. Լենինի տեսակետը:

Որպես Կենտկոմի ռուսական բյուրոյի քարտուղար, Ե. Դ. Ստասովան միշտ տեղյակ էր Ռուսաստանի հեղափոխական կյանքի իրադարձություններին, գիտեր, թե որտեղ է գտնըվում Վ. Ի. Լենինը: Այդ է վկայում 1917 թ. ապրիլի 9-ին Կանսկի գավառի Շելաեվո գյուղ՝ Ի. Ի. Շվարցին հղած Ե. Դ. Ստասովայի նամակը. «Թանկագին Սեմյոն (Ի. Ի. Շվարցի կուսակցական մականունը— Վ. Է.)... Ինչ վերաբերում է Իլյիչին, ապա կարծում եմ, որ քո տեղեկությունները այնքան էլ ճիշտ չեն, որովհետև նա ոչ թե Փարիզում է, այլ Ժնևում... Կենտրոնի և Իլյիչի հայացքները միատեսակ են, դա երևում է դատավարությունից (նկատի է առնված IV Պետական դումայի բոլշևիկ դեպուտատներ Պետրովսկու, Բադաևի, Մուրանովի, Սամոյլովի, Շագովի նըկատմամբ դատավարությունը— Վ. Է.): Լենինը, ես այդ գիտեմ, որոշակիորեն մատնանշում է, որ Ինտերնացիոնալի խորտակումը տեղի ունեցավ, նրա կարծիքով, այնտեղ օպորտունիստների գերակշռության հետևանքով...

Ներկայիս պատերազմում Պլեխանովը, իմ կարծիքով, նահանջեց, իսկ իր վերջին հոդվածում, ըստ իս, նացիոնալիստական տեսակետի վրա է կանգնած և նրա շատ փաստարկներ կարելի է հենց իր դեմ ուղղել: Ինձ թվում է, որ նա մեծ սխալ է անում...

Առողջությունս բոլորովին էլ լավ չէ, թույլ եմ, ամեն բանից հոգնում եմ: Այս գարունն իրեն զգացնել է տալիս և թոքերս լավ չեն գործում:

Ասեմ նաև, որ 3 տարով Կրասնոյարսկ է արտաքսված «Просвещения»-ի հրատարակչուհի Ե. Գ. Սմիտենը»[2]:

1915 թ. մայիսի 26-ին Ե. Դ. Ստասովային թույլատրվեց ժամանակավորապես բնակվել Աչինսկ քաղաքում, ուր պետք է տեսակցության գային նրա ծնողները: Աչինսկում Ե. Դ. Ստասովային հաջողվում է աշխատանքի տեղ գտնել: Այդ առթիվ նա 1915 թ. հունիսի 20-ին Ենիսեյսկի նահանգապետին գրել է. «...Ժամանելով Աչինսկ քաղաքը և վաստակի կարիք զգալով, ես սկսեցի աշխատանք որոնել և Աչինսկի փոխադարձ վարկավորման ընկերությունից առաջարկություն ստացա կատարել օտարերկրյա թղթակցի պարտականությունները, քանի որ ես տիրապետում եմ անգլերենին, ֆրանսերենին և գերմաներենին, բայց այդ աշխատանքը ինձ առաջարկվել կարող է միայն այն դեպքում, եթե ես Աչինսկում ապրելու լինեմ ավելի տևական ժամանակով: Այդ հանգամանքից ելնելով, խնդրում եմ Ձերդ գերազանցությանը ինձ թույլատրել այսուհետև մնալ Աչինսկում»[1]: Ե. Դ. Ստասովային թույլատրվեց ապրել Աչինսկում «խըստախուսական վարքագծի» ցուցաբերման պայմանով:

[1]. ГАКК, ф. 827, оп. 1, д. 1366, л. 450.

[2]. ГАКК, ф. 827, оп. 1, д. 372, л. 180.



Լենինյան «Հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները եվրոպական պատերազմում» հռչակավոր թեզիսներն ստանալուն պես, որոնք Վ. Ի. Լենինը գրել էր Շվեյցարիայում, ուր նա տեղափոխվեց Պորոնինոյից՝ պատերազմն սկսվելուց անմիջապես հետո, Ե. Դ. Ստասովան դրանք առաքեց աքսորյալ բոլշևիկներին: Պահպանվել է 1915 թ. հունիսի 28-ին Կանսկի գավառի Ագինսկ գյուղում գտնվող աքսորյալ Վասիլի Հակոբի Խաչատուրյանին հղած նամակը, որի մեջ Ե. Դ. Ստասովան գրում էր. «Թանկագին Վասո (այդպես էին կոչում Խաչատուրյանին կուսակցական մտերիմները— Վ. Է.), ինձ շատ վշտացրեց Ձեր վերջին նամակը, որտեղ Դուք գրում եք, թե այնքան վատ եք զգում... Ես լիովին համաձայն եմ Ձեզ հետ այն ամենի վերաբերմամբ, ինչ Դուք ասում եք առասպելաբանության մասին: Կավելացնեմ միայն, որ այժմ, ըստ երևույթին, ամենուրեք պրոլետարիատի աչքերն սկսում են բացվել, և նա սկսում է բողոքել պատերազմի դեմ: Տեսնենք, թե ինչ կլինի հետո: Շատ եմ ցավում, որ Դուք թեզիսները չեք ստացել: Ես դրանք մայիսի 10-ին ուղարկել եմ Ձեզ: Ահա դրանք՝ «Լենինի թեզիսները», ինչպես հաղորդեցին ինձ...

Սրտագին ողջույն Ձեզ թանկագին ընկեր, ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը և գրկում Ձեզ: Ելենա»[2]:

Ե. Դ. Ստասովան «չարդարացրեց» տեղական իշխանությունների վստահությունը: 1915 թ. հուլիսի 16-ին Ենիսեյսկի նահանգի ժանդարմական վարչության պետը Ենիսեյսկի նահանգապետին գրել է. «...Ներկայումս իմ տնօրինությանը վստահված վարչությունում հետախուզական ստույգ տեղեկություններ են ստացվել, որ Ստասովան չի դադարեցնում իր հանցավոր գործունեությունը, այլ, ընդհակառակը, լայն կապեր ունի հեղափոխական լուրջ գործիչների, ինչպես նաև նահանգի շատ աքսորյալ-վերաբնակների հետ, որ հնարավոր է ենթադրել, թե Ստասովան ագիտացիա է մղում Աչինսկ քաղաքի տեղական բնակչության շրջանում[3]:

1915 թ. օգոստոսի 9-ին Ե. Դ. Ստասովային Աչինսկից փոխադրեցին Մինուսինսկի գավառի Կուրագինո գյուղը: Բայց այդ միջոցառումը ոչինչ չտվեց իշխանություններին: Ե. Դ. Ստասովան կուսակցական աշխատանքը չդադարեցրեց: Նա շարունակում էր նամակագրությունը Ս. Սպանդարյանի հետ, վերականգնեց կապը Տուրուխանսկի աքսորում գտնվող Յա. Մ. Սվերդլովի հետ: Ելենա Դմիտրիևնայի մասին Յակով Միխայլովիչին շատ բան էր պատմում նրա մերձավոր բարեկամ Սուրեն Սպանդարյանը: Հետագայում Ե. Դ. Ստասովան գրում էր. «...Յա. Մ. Սվերդլովին ես անձամբ չգիտեի, չէի հանդիպել և նամակագրություն չէի ունեցել նրա հետ: Սիբիրում սկսված մեր նամակագրությունը, բացի անձնական նամակներից, հետաքրքրական է նրանով, որ մենք մեր ձեռքի տակ ունեցած բոլոր հասցեներով, աքսորյալ ընկերներին հաղորդում էինք այն ամբողջ կուսակցական նյութը, որ մեր տրամադրության տակ էր դրվում: Յակով Միխայլովիչն անհապաղ ինձ էր ուղարկում ստացված նյութը, իսկ ես անհամար արտագրում էի այն առանձին ընկերների համար: Լինում էր նաև այնպես, որ ես ստանում էի կուսակցական որևէ նյութ և այն ժամանակ ինձ համար պատճենն հանելով, դրանք ուղարկում էի Յակով Միխայլովիչին. նա ուներ հասցեների իր ցուցակը, ես՝ իմը, և այսպիսով, մենք ընդգրկում էինք Սիբիրը...» (Е. Д. Стасова. Страницы жизни и борьбы, стр. 78):

Ե. Դ. Ստասովայի մշտական զբաղվածության մասին է վկայում Ի. Ի. Շվարցին հղած նրա 1916 թ. ապրիլի 20-ի նամակը. «Թանկագին Սեմյոն: Քո նամակը արդեն մի քանի օր առաջ է ստացվել, բայց ես ազատ ժամանակ չունեի ավելի շուտ պատասխանելու, որովհետև իմ՝ քաղաքում գտնվելու մեկ ամսվա ընթացքում (մարտի 10-ին նահանգապետը Ե. Դ. Ստասովային թույլատրեց մեկ ամիս լինել Մինուսինսկ քաղաքում՝ մասնագետ բժշկի մոտ բուժվելու համար— Վ. Է.) ես բոլորովին դուրս եկա հունից և ինձ մոտ կուտակվեցին մեծաթիվ նամակներ, որոնք պատասխաններ են պահանջում, իսկ ես այստեղ ժամանելուն պես ուղղակի ընկա բանվորների ջրապտույտը և միայն ամենավերջին ժամանակներս որոշ չափով իմ զբաղմունքները կանոնավորեցի, ուստի և կարող եմ հանգիստ խղճով մի քիչ ավելի ժամանակ հատկացնել ինքս ինձ, իմ ընթերցանությանը, նամակագրությանը և այլն»[4]:

Դեռ 1915 թ. ամռանը Ե. Դ. Ստասովան վճռեց ինչ էլ լինի թույլտվություն ստանալ ժամանակավորապես Պետրոգրադ ընկնելու:

[1]. ГАКК, ф. 529, оп. 69, д. 1135, л. 24.

[2]. ГАКК, ф, 827, оп. 1, д. 372, л. 225.

[3]. ГАКК, ф. 595, оп. 69, д. 1135, л. 39.

[4]. ГАКК, ф. 827, оп. 1, д. 379, л. 124.

Այդ նպատակով, ինչպես հետագայում գրում էր Ելենա Դմիտրիևնան. «գտնելով օրենքի այն հոդվածը, որի համաձայն աքսորյալ-վերաբնակիչը, կրելով աքսորի մի որոշ ժամկետը, զառամյալ ծնողներին տեսնելու նպատակով Ռուսաստանի Եվրոպական մաս մեկնելու համար «արձակուրդի» իրավունք ունի (նույն տեղը, էջ 81), 1916 թ. հունիսի 2-ին նա այդ հարցով դիմեց Ենիսեյսկի նահանգապետին: Հենց այդպիսի խնդրանքով 1916 թ. հունիսի 6-ին Ենիսեյսկի նահանգապետին դիմեց Ելենա Դմիտրիևնայի մայր Պ. Ստասովան. «...3 տարի առաջ մեր դուստրը՝ Ելենան, արտաքսվեց Սիբիր և այժմ գտնվում է Մինուսինսկի գավառի Կուրագինո գյուղում: Այդ ժամանակից ի վեր մենք նրան չենք տեսել: Ո՛չ ամուսինս, ո՛չ ես ի վիճակի չենք մեկնել նրա մոտ. նա 88 տարեկան է, իսկ ես՝ 76. ամուսինս կորցրել է տեսողությունը, իսկ իմ մեկ ձեռքը կտրված է: Մեզ քիչ է մնում ապրելու, ուրեմն հնարավորություն տվեք տեսնելու մեր դստերը, թույլ տվեք նրան մի քանի ամսով տեսակցության համար Պետրոգրադ գալու»[1]:

Աքսորի ժամանակաընթացքում Ե. Դ. Ստասովան ակտիվ կապ էր պահպանում անդրկովկասյան բոլշևիկների, ինչպես աքսորում գտնվող Ս. Սպանդարյանի, Ա. Ս. Ենուկիձեի, Պ. Ա. Ջափարիձեի, այնպես էլ ազատության մեջ գտնվող Ս. Գ. Շահումյանի, Ս. Ի. Կասյանի և ուրիշների հետ:

Թիֆլիսի նահանգային ժանդարմական վարչության պետի օգնականի պահանջով 1916 թ. օգոստոսի 27-ին Ենիսեյսկի նահանգային ժանդարմական վարչության պետի օգնականն անսպասելի խուզարկություն կատարեց Ե. Դ. Ստասովայի մոտ և հայտաբերեց հետևյալը. 1) «Коммунист» հանդեսի հրատարակման վերաբերյալ ծանուցման մեկ տպագիր օրինակ 1915 թ. մայիսի 20-ի թվագրությամբ. 2) 33, 38, 40 և 43 №№-ները կրող «Социал-демократ» թերթի արտասահմանյան հրատարակության չորս օրինակ. 3) Կարմիր մատիտով համարակալված, ձեռագիր բովանդակող 10 տետր, որոնցում արտագրված են ա) Ցիմերվալդի ինտերնացիոնալ սոցիալիստական կոնֆերանսի անունից ընդունված կոչը, բ) ՌՍԴԲԿ Կովկասյան կազմակերպությունների խորհրդակցության բանաձևը. 4) հեղափոխական բնույթի տասներկու օրինակ տարբեր բրոշյուրներ, ինչպես նաև այլ փաստաթղթեր ու նամակագրություններ, որոնք ցույց են տալիս աքսորյալ-վերաբնակ Ելենա Ստասովայի քաղաքական անբարեհուսությունն ու հանցավոր գործունեությունը»[2]:

1916 թ. սեպտեմբերի սկզբին արդարադատության պարոն մինիստրից ստացվում է թույլտվություն՝ Ե. Դ. Ստասովային ծնողների հետ տեսակցության համար Պետրոգրադ գալու 4-ամսյա «արձակուրդ» տալու մասին:

Ե. Դ. Ստասովայի Կրասնոյարսկ քաղաք ժամանելը զուգադիպեց Սուրեն Սպանդարյանի փոխադրմանը Ենիսեյսկ քաղաքից Կրասնոյարսկի քաղաքային «Բժիշկների ընկերություն» հիվանդանոց, որտեղ 1915 թ. աշխատում էր աքսորյալ բոլշևիկ, բժշկական գիտությունների դոկտոր Ֆ. Վ. Գուսարովը: Ե. Դ. Ստասովան Սուրեն Սպանդարյանից և Թիֆլիսում գտնվող նրա ընտանիքի մասին պատմեց Ֆ. Վ. Գուսարովին, որին նա շատ լավ գիտեր Կենտրոնական Ռուսաստանում կատարած համատեղ կուսակցական աշխատանքից: Ե. Դ. Ստասովան, հրաժեշտ տալով Սուրեն Սպանդարյանին, որին հարգում և գնահատում էր որպես բոլշևիկյան կուսակցության տեսաբանի, Կրասնոյարսկում զինվորական ծառայության մեջ գտնվող Ա. Ս. Ենուկիձեի, ինչպես նաև աքսորական այլ ընկերների հետ 1916 թվականի սեպտեմբերի 7-ին մեկնեց Պետրոգրադ: Սուրեն Սպանդարյանի մահվան լուրը սրտի խոր կսկիծով իմացավ Ե. Դ. Ստասովան:

Պետրոգրադում Ե. Դ. Ստասովան իսկույն ևեթ ներգրավվեց կուսակցական աշխատանքի և մեծ օգնություն ցույց տվեց ՌՍԴԲԿ կենտկոմի ռուսական բյուրոն շուտափույթ վերականգնելու գործին և առաջվա պես ակտիվ մասնակցեց նրա աշխատանքին: И. А. Алуф. В. И. Ленин и Русское бюро ЦК РСДРП (1914 г.—февраль 1917 г.):

Ե. Դ. Ստասովան Պետրոգրադից շարունակում էր նամակագրություն պահպանել աքսորյալ ընկերների հետ, հաղորդում էր նորությունները, ուղարկում էր կուսակցական փաստաթղթեր:

Փետրվարյան հեղափոխության հաղթանակով սկսվում է նոր էտապ Ե. Դ. Ստասովայի կենսագրության մեջ:

Վ. Ս. ԷՄԵՔՍՈՒԶՅԱՆ

---

[1]. ГАКК, ф. 595, оп. 65, д. 2794, л. 129.

[2]. ГАКК, ф. 827, оп. 1, д. 1794, л. 63.

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՎԱՎԵՐԱԳՐԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Հ. Գ. ԹՈՒՐՇՅԱՆ

*Գրականության մեջ հիշատակություն կա գեներալ, հայկական կորպուսի գլխավոր հրամանատար Թովմաս Նազարբեկովի վհատեցուցիչ հեռագրի մասին, որը բոլորովին հուսահատության էր մատնել Թիֆլիսի Հայոց ազգային խորհրդին և նրան հարկադրել ընդունելու հաշտության վերաբերյալ թուրքական ամեն մի առաջարկություն, որքան էլ այն ո՛չ միայն նվաստացուցիչ, այլև սպանիչ լիներ Կովկասի հայության համար: Իրավեկ անձինք 1918 թվականի ողբերգության մասին գրելիս ակնարկել են այդ հեռագրի գոյությունը, սակայն այն չեն հրապարակել ո՛չ բաղվածաբար, ոչ էլ ամբողջությամբ:*

*Սարդարապատի հերոսամարտի մասին իմ աշխատության մեջ ես սույն ակնարկումների հիման վրա հիշատակություն կա այդ հեռագրի մասին, սակայն ես ժամանակին իմ ձեռքի տակ չեմ ունեցել դրա տեքստը և, ուրեմն, ես ևս չեմ կարողացել այն բերել իմ աշխատության մեջ: Հիմա պարզվում է, որ գեներալ Նազարբեկովն այդ օրհասական օրերին Թիֆլիսի Հայոց ազգային խորհրդին հղել է ոչ թե մեկ, այլ երկու վհատեցուցիչ հեռագիր, որոնք այժմ պահպանվում են ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի արխիվում, ուր ես պրպտումներ չէի կատարել այդ աշխատությունը գրելիս:*

*Թուրքերը, խախտելով իրենց իսկ թելադրած հաշտության պայմանները, 1918 թվականի մայիսի 15-ի վաղ առավոտյան, Կարսի անկումից ուղիղ քսան օր հետո, երբ կարելի էր կարգի բերել հայկական զինված ուժերը, հանկարծակի գրոհել էին Ալեքսանդրապոլի վրա: Հայ զորքի մեծ մասն առանց գնդակ արձակելու փախել էր դեպի Ղարաքիլիսա (Կիրովական), մինչ թուրքական զորքի դեռ միայն առաջապահ վաշտերն էին շարժման մեջ դրվել: Նահանջ-փախուստի ճանապարհին, հանդիպելով հայ գյուղացիության անբարյացակամ վերաբերմունքին, հայ զորքը բոլորովին քայքայվել էր:*

*Մայիսի 18-ին Ղարաքիլիսա հասնելով, գեներալ Թ. Նազարբեկովը, ի տես իր զորքի ախուր վիճակի, երբ զասալքել և զասալքում էին ո՛չ միայն զինվորները, այլև սպաներն ու անգամ գեներալը (գեն. Մ. Արեշովը), ի տես հայ գյուղացիության անբարյացակամ վերաբերմունքի, հուսահատված, Թիֆլիսի Հայոց ազգային խորհրդին (որը կենտրոնականն էր) ուղարկում է կովկասյան բանակի կապի պետ՝ գեներալ Քվինիտաձեին հղած հեռագրի պատճենը:*

«ՀԵՌԱԳԻՐ, ԹԻՖԼԻՍ, ԳԵՆԵՐԱԼ ՔՎԻՆԻՏԱՁԵԻՆ*, ՊԱՏՃԵՆԸ՝ ՀԱՅՈՑ ԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀԻՆ

Անձնական զեկույցի համար հիմա մոտս եկավ Ալեքսանդրապոլի զորաբանակի պետ և Հայկական առաջին Հրաձգային դիվիզիայի հրամանատար գնդապետ Բեյ-Մամիկոնյանը**: Ըստ նրա նախորդ հաղորդումների և անձնական զեկույցի, հիմա նակատում ես

---

* *Անդրկովկասյան բանակի կապի պետ:*

** *Ալեքսանդր Պետրովիչ Բեյ-Մամիկոնյան:*

Ինչպես տեսնում ենք, ճգնաժամային պահն է Դաշնակցության արևմտահայ հատվածին թելադրել ճշմարտությունն ասելու՝ ամենալուրջ մեղադրանք ներկայացնելով Դաշնակցության Արևելյան բյուրոյին, որը քմահաճորեն և այնքան ապիկարորեն տնօրինել էր հայության բախտը։

«Աշխատանք» թերթը, համամիտ լինելով միտինգավորների հետ, նույնպես կարծում էր, որ «պետք է հրապարակ գա ձեռք մը, որը հրամայե միայն», սակայն դժգոհ էր, որ «ժողովուրդը անղեկ նավի մը նման կդիմե միթինգներու մեջ նոր ղեկավարներ ճարելու, բայց չի կրնար գտնել, կամ դարձյալ նույն մարդկանց օձիքեն կբռնե»։

Բնականաբար, հարց է ծագում, ինչո՞ւ անղեկ, երբ կար բոլշևիկյան ուրիշներին անտեսող ու ահաբեկող մեկ տիրապետող կուսակցություն— դաշնակցությունը։

Նման իրադրության մեջ չէր կարող գտնվել և չգտնվեց այն ձեռքը, որը կազմակերպեր ու հրամայեր առանց ժողովներ գումարելու, բայց դրությունը փրկվեց։ Եվ փրկվեց տարերայնորեն։ Ահա թե ինչպես։

Ես այժմ գրում եմ ո՛չ միայն որպես պատմագրող, այլ նաև որպես ականատես-հուշագրող։

Պարսկաստանի ու Վանի կողմերի արձակուրդավոր հայ զինվորականները, ճանապարհները փակ լինելու պատճառով, հարկադրաբար մնում և կուտակվում էին Երևանում։

Պարսկաստանում և Բայազետ—Ալաշկերտ—Վանի շրջանում տեղադրված ռուսական բանակը նահանջում— տուն էր վերադառնում Երևանի վրայով։ Այդ բանակի շարքերում գտնվող հայ զինվորներն ու սպաները, ինչպես նաև ռուսական բանակին սպասարկող «Союз городов»-ի հայ աշխատակիցները Արարատյան դաշտ հասնելիս, նկատի ունենալով տունդարձի ճանապարհների անապահովությունը հատկապես հայերի համար, գերադասում էին մնալ Երևանում։

Երկաթուղային ճանապարհների (Շահթախթ, Ուլուխանլու, Բորչալու) փակվելուց առաջ, այսինքն՝ մինչև 1918 թ. փետրվար-մարտ ամիսները, տարբեր գործերով Երևան ու էջմիածին ժամանած հայերը փաստորեն բանտարկված մնացել էին Երևանում և էջմիածնում։

Բանակում լավ թե վատ կերակրում էին։ Ուրեմն, պետք էր մտնել գնդերի կազմի մեջ։ Երևանում և էջմիածնում գտնվող բազմաթիվ ոչ-տեղացիներ ուզեին-չուզեին պետք է դիմեին այդ քայլին։ Այստեղից էլ գնդերը, հակառակ գեն. Մ. Սիլիկովի զեկույցի, ոչ թե նոսրանում, այլ աճում էին այդ նեղ օրերին։

Գնդերի աճման այս պրոցեսը շատ ավելի արագացավ Ալեքսանդրապոլի անկումից հետո։ Ալեքսանդրապոլի անկման բոթը շարժման մեջ դրեց բոլոր անշարժներին։

Ինքնապահպանման բնազդը մարդկանց հրամայաբար թելադրում էր գտնել ինքնապաշտպանության միակ հնարավոր ձևը— հայրենակցական համախմբումը։ Ալեքսանդրապոլի անկումից հետո Երևանի հայությունը ամբաժ, սահմռկած կուչ էր եկել մահվան օղակում, որն օրեցօր սեղմվում էր և համատարած մահը տիրաբար տարածում էր իր թևերը։ Փրկության ոչ մի շող։ Թուրքը մտել էր Արարատյան դաշտը և արդեն հասնում էր Զանգիբասարին։ Գնդերն աճում էին ոչ թե այդ օրերի առավել մասսայական կուսակցության կազմակերպչական աշխատանքի շնորհիվ, այլ միայն ու միայն ստեղծված անհուսալի իրադրության մեջ որևէ ելք գտնելու՝ դատապարտյալի հուսակտուր տարերային ճիգով։

Դաշնակցությունը չկարողացավ կուռ ու կարգապահ բանակ ստեղծել վճռական պահին։ 1918 թվականին Նազարբեկովի, Սիլիկովի, Արեշովի և այլոց նման գեներալներին վստահված զորքն իրականում ի վիճակի չէր հաջողությամբ մղելու ժողովրդական ինքնապաշտպանական արդար պատերազմը։ Երզնկայից մինչև Սարդարապատ կրած պարտությունների մեղքը ծանրանում է ոչ թե այդ գեներալների, այլ այդ օրերի միակ տիրող կուսակցության, դաշնակցության վրա, որը չկարողացավ օրհասական պահին կազմակերպչական գույքն իսկ շնորհք հանդես բերել, բայց մյուս կուսակցությունների խիստ թուլության պայմաններում կարողացավ իրեն վերագրել տարերայնորեն ձեռք բերված հաղթանակը։

Հարց է ծագում. որտե՞ղ էին այդ օրերին Դաշնակցության Այգեստանի (Երևանի) Կենտրոնական կոմիտեն, ո՞վ էր Թոշյանին լիազորել այդպիսի կապիտուլյանտական որոշում կայացնել։ Հուշագրողները երկար են խոսում այդ օրերի շատ երկրորդական իրադարձությունների մասին (ինչպես՝ գրաստային տրանսպորտի համար Երևանի այգետերերի էշերը հավաքելը, Երևանում մնացած պարսից շահզադայի և նրա ռուս սիրուհու հնարովի արկածները և այլն), սակայն ոչ մի խոսք չեն գրում, թե Դաշնակցության Երևանի Կենտրոնական կոմիտեն այդ օրերին գումարե՞լ է արդյոք որևէ նիստ, իր հերթական նիստում հավանություն տվե՞լ, թե՝ չի տվել Երևանի քաղաքային դումայի նախագահ Թոշյանի կապիտուլյանտական քայլին, հաստատե՞լ, թե՞ չի հաստատել Արամի դիկտատոր ընտրվելը, կատարե՞լ է արդյոք կազմակերպչական որևէ աշխատանք՝ բանակի շարքերը համալրելու համար և այլն։



* * *

Հուսահատության կնիք կա, «Աշխատանքի» Երևանը հոդվածի վրա։ Ստեղծված անմխիթարական իրադրության մեջ գործող դիկտատորն ի վիճակի չէր և չեղավ բեկումն առաջացնելու իրերի տխուր ընթացքի մեջ։ Երևանի քաղաքային Դումայի կապիտուլյանտական որոշման ուժով գեն. Սիլիկովն ընդհանուր նահանջի հրաման է տալիս։ Զորքը պիտի բարձրանար Կոտայքի ու Սևանի բարձրավանդակը, իսկ պարետ Շահխաթունին աղ ու հացով քաղաքը պիտի հանձներ թուրքերի «ողորմածությանը»։

Իրերի տխուր ընթացքի մեջ մոգական ուժի բեկումն առաջ բերին Արարատյան դաշտում տեղակայված գնդերը, որոնք այդ օրերին, հակառակ գեն. Սիլիկովի զեկուցագրի, ոչ թե նոսրացել, այլ անհամեմատ աճել էին հայրենակցական համախմբման ճողի վրա, ինչպես նաև նույն Արարատյան դաշտում, նույնպես հայրենակցական համախմբման հողի վրա, փորձառու մարտիկների շուրջ աճած աշխարհազորայինների խմբերը։

Ղամըշլու հասած թուրք զորքը կտրել էր դեռևս Ղուրդուղուլու գավառակում մնացած հայ զորքի և գյուղացիության նահանջի ճանապարհը։ Նահանջի ճանապարհ բացելու համար գնդապետ Դանիել բեկ Փիրումյանը հարկադրաբար հակահարձակման հրաման է տալիս իր զորքին։ Հակահարձակումը պսակվում է փայլուն հաջողությամբ։ Սատանան, ինչպես ռուսական առածն է ասում, այնքան սարսափելի չէր, որքան մինչ այդ պատկերացնում էին։ Ինքնաբերաբար մղված այս հաջողված հակահարձակումն էր, որ սկիզբ դրեց Սարդարապատի պատմական գոյամարտին, մոռացության մատնեց Երևանի Քաղաքային Դումայի կապիտուլյանտական որոշումը։

1918 թվականի ինքնապաշտպանության համար խիստ բնորոշ է գեն. Սիլիկովի տխուր անիրազեկությունը, երբ նրա գնդերը համալրվում էին, իսկ նա գլխավոր հրամանատարին զեկուցում էր, թե դասալքության պատճառով գնդերում զորք չի մնացել։ Սա զինվորական հրամանատարության և այդ հրամանատարությունը կարգող ու նրան իբրև թե վերահսկող քաղաքական կուսակցության սնանկության պերճախոս վկայությունն է։

Պատմության շրջադարձային պահերին նման անճարակությունը օբյեկտիվորեն համազոր է դավաճանության։



*Վերջին փոստից*

# ԼԱՎ Է ՈՒՇ, ՔԱՆ ԵՐԲԵՔ

*Սույն թվականի սեպտեմբերի 20-ին խմբագրությունն ստացավ Մորավիայի արծիվը գրքույկի հեղինակներից մեկի՝ Ա. Հովհաննիսյանի նամակը, ուր նա գրում է.*

«Թեև ուշացումով... բայց և հարկ ենք համարում ընթերցողներին տեղյակ պահել, որ մենք համամիտ ենք խմբագրության՝ բանավեճը եզրափակող կարծիքին *(տե՛ս «Լենինյան ուղիով», 1970 թ., № 6, էջ 112)*: Փորձելով... վերարտադրել Արտեմ Պետրոսյանի մարտական սխրանքները, մենք քիչ նշանակություն ենք տվել նյութի վավերականությանը, որպիսի մոտեցումը հանգեցրել է փաստական մի շարք անճշտությունների ու վրիպումների»:

*Մինչդեռ, վեճում «անճշտություններից» ու «վրիպումներից» զատ, առավել էական հարցեր են արծարծվել: Այսպիսով, բացելով սույն խոստովանության փակագծերը՝ պետք է եզրակացնենք, որ ըստ էության, վավերագրական այս գրքույկի հեղինակների մեթոդն ու գրելաձևն են արատավոր: Անշուշտ, խմբագրությունը հնարավորություն կունենար ընթերցողներին ավելի շուտ կողմնորոշելու ծագած վիճաբանության հարցում, եթե այս նամակն ստացվեր ժամանակին, առանց մեր գրավոր հիշեցման:*

*Նամակում, սակայն, ընկ. Ա. Հովհաննիսյանը պնդում է, թե՝* «...համատեղ աշխատանքի ընթացքում չափից ավելի է վերավստահվել Ա. Ռուսակին, որի ուսումնասիրությունները պակասավոր շատ կողմեր ունեն»: *Վերավստահվե՞լ... չի՞ նշանակում՝ փառքը ինձ, մեղքը՝ քեզ, Ռուսա՛կ (գրքի մյուս հեղինակը):*

*Եթե Ա. Հովհաննիսյանն այս «ճշմարտությունը» բացահայտեր իր պատասխան հոդվածում (տե՛ս «Լենինյան ուղիով», 1967 թ., № 4, էջ 107—112), վեճն, անշուշտ, ստեղծագործական կլիներ, թեև այժմ էլ անհամոզիչ և անհարկի ենք համարում իր գրչակցին մեղադրելու վերոհիշյալ անհիմն միտումը:*

*Իսկ «կրքոտ հայրենասեր Ա. Պետրոսյանի ամբողջական ու իրական կերպարի ստեղծման» մասին Ա. Հովհաննիսյանն արդեն իրավամբ գրում է.* «Միաժամանակ համոզվեցինք, որ ժուռնալիստ Հակոբյանը, երկարատև ժամանակամիջոցում ավելի խոր ու հանգամանալից ուսումնասիրություններ է կատարել»:

*Այո՛, դրա վկայությունն է Մ. Հակոբյանի* Աստղերը չեն ընկնում *գրքի III գլուխը՝ նվիրված Ա. Պետրոսյանին (1970 թ., էջ 102—142):*

*Գոհունակությամբ ենք նշում, որ Ա. Հովհաննիսյանը, վերջապես, փաստորեն հերքեց խմբագրությանը հղած իր նամակի (1966 թ. դեկտեմբերի 1-ի) այն հերյուրանքը, թե մեր ամսագրում (1966 թ., № 11) հրապարակված Մ. Հակոբյանի քննադատական դիտողություններն իրենց գրքի վերաբերյալ՝* «սկզբից մինչև վերջ զրպարտություն» *են: Կարծիքների և հայացքների այս բևեռայնությունը որքան ցավալի, նույնքան և ուսանելի է: Հիրավի, զրպարտության և ճշմարտության զանազանումը ևս արժանիք է:*

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 01672 Պատվեր 1532 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12.200 Գինը 25 կոպ..*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 12/X 1971 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյան փող. № 28:*

## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Աթեիզմի, կրոնի և եկեղեցու մասին: *Մ.* «Мысль» *հրատ., 1971, 534 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ընտիր երկեր: *Երեք հատորով: Հատոր երրորդ: Մ.,* Политиздат, *1971, 856 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երիտասարդության միությունների խնդիրները: *(Ճառ Ռուսաստանի Կոմերիտմիության համառուսաստանյան III համագումարում): 2 հոկտեմբերի 1920 թվականին: Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1971, 32 էջ:*

ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ Ջ. Գ.— Ֆրիդրիխ Էնգելս: *Կյանքը և գործը: «Հայաստան» հրատ., 1971, 332 էջ:*

ԼՈՒՆԱՉԱՐՍԿԻ Ա. Վ.— Հոդվածներ սովետական գրականության մասին: *Մ.,* «Просвещение» *հրատ., 1971, 568 էջ:*

Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ: *Հոկտեմբերյան հեղափոխության և քաղաքացիական պատերազմի վետերանների հուշերից: Մ.,* «ДОСААФ» *հրատ., 1971, 256 էջ:*

ԻՏԵՆԲԵՐԳ Բ. Ս.— Ռուսաստանը և փարիզյան կոմունան: *Մ.,* «Наука» *հրատ., 1971, 200 էջ:*

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության պատմություն: *1917—1970 թթ.: Երկու մասով: Մաս երկրորդ. 1945—1970 թթ.: Մ.,* «Наука» *հրատ., 1971, 520 էջ:*

Հակակոմունիզմը և հակասովետիզմը սիոնիստների պրոֆեսիան է: *Մ.,* Политиздат, *1971, 128 էջ:*

ՖՈՄԻՆ Վ. Վ.— ՄԱԿ-ը և միջազգային առևտուրը: *Իրավական հարցեր: Մ.,* «Межд. отношения» *հրատ., 1971, 168 էջ:*

ՊԵՏԵՐՍ Ի. Ա.— ՍՍՀՄ-ը, Չեխոսլովակիան և եվրոպական քաղաքականությունը Մյունխենի նախօրյակին: *Կիև,* «Наука думка» *հրատ., 1971, 192 էջ:*

Զրույցներ սոցիալիստական էկոնոմիկայի մասին: *Օրինակելի ուսումնական պլան երիտասարդության քաղաքական լուսավորության սիստեմում: «Հայաստան» հրատ., 1971, 62 էջ:*

ԵԼՅՈՒՏԻՆ Վ. Պ.— Բարձրագույն դպրոցի զարգացումը ՍՍՀՄ-ում: *1966—1970: Մ.,* «Высшая школа» *հրատ., 1971, 100 էջ:*

Զրույցներ կոմունիստական բարոյականության մասին: *Ուսումնական պլան երիտասարդության քաղլուսավորության սիստեմի համար: «Հայաստան» հրատ., 1971, 70 էջ:*

ԱՎԱԳՅԱՆ Վ. Լ.— Հայաստանի կոմունիստական կուսակցության պայքարը քիմիական արդյունաբերության ստեղծման ու զարգացման համար *(1920—1965 թթ.) «Հայաստան» հրատ., 1971, 268 էջ:*

Կոմերիտմիությունը և դեռահասները: *Կոմերիտմիության համագումարների, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փաստաթղթերն ու նյութերը: Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1971, 286 էջ:*

Արվեստի սպեցիֆիկայի մի քանի հարցեր: *Ե. ԳԱ հրատ., 1971, 296 էջ:*

*Այս ժողովածուում (ռուսերեն) զետեղված են ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի գիտաշխատողների հոդվածները արվեստի տարբեր բնագավառների հարցերի շուրջ:*

ԱՄԱԼՅԱՆ Հ. Մ.— Միջնադարյան Հայաստանի բառարանագրական հուշարձաններ *(XVI—XVII դդ.) Ե., ԳԱ հրատ., 1971, 314 էջ:*

25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՄՍԱՂԱՑ

*Լվովի կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոն ստեղծել է էլեկտրա-մսաղաց՝ միս, ձուկ, բանջարեղեն և այլ մըթերքներ աղալու համար։*

*Դրանով կարելի է երեք րոպեում աղալ մեկ կիլոգրամ մթերք։ Մսաղացի շատ մասեր պատրաստված են պլաստմասսայից և ալյումինից, որը աղացը դարձնում է թեթև ու հարմարավետ։ Պարզ հանգույցներն ու դետալները հեշտացնում են սարքի հավաքումն ու նորոգումը։*

## ՆՎԵՐ ՎԱՐՈՐԴՆԵՐԻՆ

*Օմսկի էլեկտրամեխանիկական գործարանն ավտոմեքենաների համար թողարկում է «Малыш» մակնիշի նոր փոշեծծիչ։ Այն միացվում է ակումուլյատորին և դրա միջոցով մաքրվում են հագուստի, մեքենայի հատակի, նստելատեղերի, գորգերի, անցքերի և այլ մասերի փոշին։ Գործարանն արդեն թողարկել է այդ մակնիշի մի քանի հազար փոշեծծիչ։*

## ԱՃԻ ՍԻՆԹԵՏԻԿ ՀՈՐՄՈՆ

*Վերջերս Կալիֆորնիայի համալսարանի հորմոնային ուսումնասիրությունների լաբորատորիայի դիրեկտոր, դոկտոր Ս. Լին հայտարարեց, որ հաջողվել է կատարել մարդու աճի հորմոնի սինթեզը։ Նա որոշել և զատել է հիպոֆիզի յոթ հորմոն։ Լիի նշանակալից հաջողություններից մեկն այն է, որ նա ստացել է ադրենոկորտիկոտրոպային հորմոն, որը կառավարում է կորտիզոնի անջատումը ենթաերիկամային գեղձից։*

*Ի տարբերություն հիպոֆիզի մյուս հորմոնների, աճի հորմոնն ազդում է օրգանիզմի ողջ հյուսվածքների վրա. Նրա սինթեզը նպաստում է հիվանդությունների բուժմանը։*

*Լին հուսով է, որ մի քանի տարի անց հնարավոր կլինի կազմակերպել ավելի մաքուր հորմոնի արտադրությունը լայն մասշտաբով։ Դա հնարավորություն կընձեռի բուժելու գաճաճությունը։*

*Ինչպես ենթադրում են, աճի սինթետիկ հորմոնի շնորհիվ հնարավոր կլինի բուժել հորմոնային խանգարումների հետ կապված մի շարք հիվանդություններ։ Ամերիկյան մասնագետների կարծիքով, ապագայում կստեղծվի անտագոնիստ-հորմոն, որը կկասեցնի քաղցկեղային բջիջների աճը։*

## ՆԱՎԹՈՐՍԻՉԸ

*Ծովերի, օվկիանոսների ջրերը նավթից մաքրելու խնդիրը միշտ էլ մտահոգել է աշխարհի գիտնականներին։ Ֆրանսիայի՝ օվկիանոսային ռեսուրսների օգտագործման ազգային կենտրոնում պատրաստվել է մի սարք, որը ջրում սուզված թիապտուտակի միջոցով ըստեղծում է վարար ջրապտույտ։ Այդ ջրապտույտի տեղում զետեղված գլանն ստեղծում է ձագարափոս, ուր հավաքվում է նավթը։ 1 մետր տրամագծով այդպիսի սարքը ժամում կարող է հավաքել 5 հազար, 2 մ. տրամագիծ ունեցողը՝ մինչև 15 հազար լիտր նավթ։*

## ՎԱՂ ԱԽՏՈՐՈՇՄԱՆ ՉԵՄՊԻՈՆԸ

*Ֆրանսիայի գիտնականները պատրաստել և կլինիկայում փորձարկել են ջերմագրաֆը— ութանկյուն, ճեփ-ճերմակ մի մեծ տուփ, որն ունի ուլտրակարմիր ճառագայթների նկատմամբ խիստ զգայուն մի գլխիկ։*

*Այս սարքի միջոցով կարելի է հիվանդությունը հայտնաբերել ամենավաղ շրջանում, երբ այն բնավ չի արտահայտվում և ախտորոշման սովորական մեթոդները (նույնիսկ ռենտգենոգրաֆիան) անզոր են որևէ բան հայտնաբերելու։ Խիստ զգայուն այս գործիքը որսում և գրանցում է մաշկի բոլոր մասերի ջերմության ամենաաննշան տատանումները (0,5°)։*

*Ջերմոգրաֆը կդառնա քաղցկեղի մի քանի տեսակների, արյան շրջանառության խանգարումների և մի շարք այլ վտանգավոր հիվանդությունների լավագույն նախաախտորոշիչը։ Դրանով կարելի է զննել նաև 50—60 տարեկանների քներակը՝ գլխուղեղի հյուսվածքների սկլերոզի, տրոմբի վաղ բացահայտման համար։ Զննումը տևում է մի քանի րոպե և նախապատրաստվելու հարկ չի լինում։*